# ԾԱՆՈԹԱՑԵՔ՝ ԴԻԱՍԵԶՆ Է



Երեխաներ, դուք երևի զարմանում եք, որ մենք տարվա առաջին համարում մի այսպիսի լուսանկար ենք տպել։ Եվ իսկապես, ո՞վ է այս տղան, որ թաքցնում է իր դեմքը։ Ինչո՞ւ է միլիցիոները նրա թևը բռնել։ Գուցե մի որևէ հանցա՞նք է գործել։

Պետք է ասել, որ մենք էլ այդպես մտածեցինք, երբ միլիցիոները, նրա թևը բռնած, մտավ «Պիոների» խմբագրություն։

Այդ օրը մեր խմբագրության կոլեգիայի նիստըն էր։ Նստել ու խոսում էինք, վիճում, աղմկում։ Եվ գիտե՞ք, թե ինչի մասին։ Խոսում էինք այն մասին, թե ինչպես անենք, որ «Պիոների» այս տարվա համարները հետաքրքիր լինեն, ի՞նչ անենք, որ դուք, երեխաներ, գոհ մնաք։ Շատ նյութեր ու հայտեր կային հավաքված, բայց դրանցից ձեզ համար մենք ընտրեցինք ամենալավերը։ Հետո մենք սկսեցինք մտածել, թե ինչպե՞ս անենք, որ ավելի լավ ու ավելի շատ նյութեր ստանանք դպրոցներից, պիոներական կազմակերպություններից, և հենց այդ րոպեին էլ դուռը բացվեց ու մի տղայի ձեռք բռնած՝ ներս մտավ միլիցիոները։

Տղայի ուսով լուսանկարչական ապարատ կար գցած, ինքն էլ հագնված էր մաքուր ու կոկիկ, մի խոսքով, կարգին տղայի տպավորություն էր թողնում, այնպես որ մենք մի պահ չհավատացինք, թե նա կարող է որևէ վատ բան արած լինել։ Բայց հետո մտածեցինք, թե ինչո՞ւ է հապա միլիցիոներն այդպես պինդ բռնել նրա թևը։

— Բարև՛ ձեզ, — ասաց միլիցիոները։ — Այս երեխան ձե՞րն է։

— Ինչպե՞ս հասկանալ, — զարմացած հարցրեցինք մենք։

— Ինչպես ուզում եք, այնպես էլ հասկացեք, ասում է, թե ձեր աշխատակիցն է։

— Մեր աշխատակի՞ցը…

— Սա «Պիոներ» ամսագրի խմբագրությո՞ւնն է, — տեղեկացավ միլիցիոները։

— Այո՛, բայց մենք այդ հասակի աշխատակից չենք ունենում։

— Տեսա՞ր, — միլիցիոները շուռ եկավ դեպի երեխան, — դե հիմա գնանք քաղմաս։

— Սպասեցե՛ք, իսկ ի՞նչ է արել որ։

— Ինչ է արե՞լ… հարցրեք, թե ի՞նչ չի արել… Ապարատը ձեռքին խցկվում էր ամեն տեղ։ Առանց տոմսի մտավ ստադիոն։ Հետևից հասա, թաքնվեց, չկարողացա գտնել։ Հետո տեսա, որ բարձրացել է պատի վրա։ Հետո ոտքը դրեց մի քաղաքացու ուսի, ասում է՝ ուզում էի լավ նկար ստանալ։ Հետո բլոկնոտը դրել էր մի մարդու մեջքին ու սկսել էր գրել։ Խեղճ մարդն էլ կարծել է, թե հետևից հրում են, ձայն չի հանել։ Դե շոգ էր, մարդը քրտնած է եղել, քիմիական մատիտով գրածը տպվել էր նրա սպիտակ կոստյումին։ Ճիշտ է, ոչինչ չէր կարդացվում, բայց կոստյումը կարգին կեղտոտվել էր։

— Ես, ազնիվ խոսք, դիտմամբ չեմ արել, — արդարացավ տղան։

— Դիտմա՛մբ, դիտմա՛մբ… Մարդու կոստյումը այնպես է կեղտոտվել, որ ստիպված մի երկու ռուբլի պիտի վճարի քիմիական մաքրման համար։ Դե լավ, երկար մնացինք, գնանք քաղմաս… Ես քեզ մանկական սենյակ կհանձնեմ…

Եվ այստեղ տղան ասաց.




ՀՈՒՆՎԱՐ
№ 1 1965 Թ.

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

— Ազնիվ պիոներական, ես ձեր աշխատակիցն եմ, այսինքն... թղթակիցը... Ձե՞ք հավատում, կարող եմ բերել ձեզանից ստացած հուշաթերթը և նամակը:

— Անունդ ի՞նչ է, — հարցրեց մեր պիոներական բաժնի վարիչը:

— Անունս...—միլիցիոներին նայելով ծոր տվեց տղան:

— Պիասեթ է, — ասաց միլիցիոները:

— Պիասե՞թ... ի՞նչ տարօրինակ անուն է... Այդ անունով մեզ ոչ ոք չի թղթակցել, — ասաց բաժնի վարիչը:

— Ըհը՛, այս էլ քո խմբագրությունը, դե գնանք, — Պիասեթի թևից ձիգ տվեց միլիցիոները...

— Սպասեցեք... լա՛վ, ես կասեմ իմ իսկական անուն ազգանունը:

Եվ նա ներկայացավ մեզ իր իսկական անուն ազգանունով: Իսկապես, որ նա մեզ թղթակցել էր և մեզանից հուշաթերթ ստացել: Բայց մենք նրա անուն ազգանունը չենք գրի և ոչ էլ կասենք, թե որ դպրոցում է սովորում: Նա ինքն այդպես ուզեց ու մենք էլ մտածեցինք, որ այդպես ավելի լավ կլինի: Նույնիսկ երբ մեր լուսանկարիչն ուզեց նկարել նրան, Պիասեթը թևով դեմքը ծածկեց. «պետք չի, — ասաց նա, — դուք ամբողջ գործը կփչացնեք»:

— Ո՞ր գործը...

— Ես հիմա կասեմ...

Ու Պիասեթն սկսեց պատմել իր ծրագիրը: Այդ արդեն, երեխաներ, մենք ձեզանից չենք թաքցնի: Ասենք, դուք ինքներդ էլ ամեն ինչ գլխի կընկնեք, եթե իմանաք, թե ինչ է նշանակում նրա անունը՝ ՊԻԱՍԵԹ: «Պիոնե՛ր Ամսագրի Սեփական Թղթակից» նախադասության հապավումն է դա, որ հենց ինքը՝ Պիասեթն է իր համար կատարել: Հետո մենք մտածեցինք, ի՞նչ կա որ, թող նա մեզ հենց այդ անունով էլ գրի, իսկապես դառնա մեր սեփական թղթակիցը: Պիասեթը խելացի, ընդունակ տղա է և կարող է դպրոցներից ու պիոներական կազմակերպություններից հետաքրքիր տեղեկություններ հաղորդել մեզ:

Սակայն մենք համաձայնվեցինք նրան մեր սեփական թղթակիցը դարձնել միայն մի պայմանով՝ անկարգություն այլևս չպիտի անի:

— Ազնիվ պիոներական խոսք, էլ չեմ անի, — ասաց նա, և մենք հավատում ենք Պիասեթին: Չէ՞ որ մենք նախքան համաձայնություն տալը եղանք նրանց դպրոցում, իմացանք, որ նա գերազանցիկ է, կարգապահ է և այն, ինչ նա արել էր ստադիոնում, թեթև ատլետիկայի մրցումների ժամանակ, պատահականություն է եղել:

Այսպես ուրեմն, ծանոթացեք մեր նոր հերոսի՝ Պիասեթի հետ: Երեխանե՛ր, նա սովորում է ձեր դպրոցում, ձեր դասընկերն է և, իմացեք, որ ամեն մի լավ և վատ բան նա տեսնում է ու կգրի մեզ:

Սպասեցեք նրա թղթակցություններին:



Նկ. Ալ. Գրիգորյանի

Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԱՐԱՄԲԵՅԱՆԻ



## ԼԵՆԻՆԻ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Վարպետները՝
— Թը՛խկ, հա թը՛խկ.—
Սղոցեցին ճյուղ, տախտակ,
Փայտը փայտին մեխեցին,
Ճյուղը ճյուղին կապեցին,
Խաղալիքներ կախեցին։
Եվ զարդարուն մեծ ծառը
Հպարտ ձգեց կատարը։
Իջան բարձր ամպերից
Փաթիլները սպիտակ,
Փայփլեցին ճյուղերին,
Լամպերի մեջ, լուսնի տակ։
Լիքը զամբյուղը ձեռքին՝
Ձմեռ պապին է իջնում.
— Լավ համար ենք պահել քեզ.—
«Արմենիայից» են կանչում։
— Ո՛չ, ես ցրտի եմ սովոր,
Հյուրանոցն ի՞նչ անեմ տաք...
Եվ բազմում է պապիկը
Արջի կողքին, ծառի տակ։
Մոտիկ փոստից էլ վերջին
Հեռագրերն են մեզ տալիս,
Թե՝ իմացե՛ք, քիչ հետո
Նոր տարին է հյուր գալիս։

## ՄԵՆՔ ԷԼ ԵՆՔ ՈՒԶՈՒՄ ՄԱՐՍԵՐԵՆ ՍՈՎՈՐԵԼ

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՑԱՐԱԼՅԱՆԻ

Մի հիսուն տարի առաջ հրատարակված գրքերում կարդացած կլինեք, որ ապագայում, այսինքն՝ հիմա, աշխարհում ամենադյուրին գործը սովորելն է։ Դպրոց ես գնում, գլխիդ ինչ-որ թասակ են հագցնում, հետո էլ բաց են թողնում էլեկտրական հոսանք ու... ու վերջ, կարող ես համոզված լինել, որ գրեթե ակադեմիկոս ես։ Հիմա հո գիտե՞ք, որ այդպիսի հրաշքով դպրոցում սովորող մեկը, ասենք՝ ես, ոչ մի դեպքում էլ ակադեմիկոսի քառորդը չի լինի։

Ընդհակառակը, եթե հիսուն տարի առաջ աշակերտները սովորում էին միայն Նյուտոնի ձգողականության օրենքները ու ոմանք էլ զարմանում, թե ինչպես է սովորական մի խնձոր ծառից ընկնելով, օրենքներ ստեղծելու պատճառ դառնում, ապա հիմա դրան ավելացել է նաև Ալբերտ Էյնշտեյնի հարաբերականության տեսությունը, որը տակնուվրա է արել Նյուտոնի բոլոր օրենքները, և որը ոչ մի կապ չունի հասած խնձորի հետ։ Մենք ինչո՞վ ենք մեղավոր, որ Էյնշտեյնը այդպիսի մի տեսություն է հորինել։ Նյուտոնից բացի, ստիպում են, որ դա էլ սովորենք։





Կամ ասենք... ասենք, մարսերենը: Հիսուն տարի առաջ մարսերենի մասին մարդիկ իրենց մտքովն իսկ չէին անցկացնում: Սովորում էին մի որևէ օտար լեզու՝ անգլերեն, իսպաներեն, կամ չէին սովորում ու վերջ: Իսկ նոր ուսումնական տարվանից, պարզվեց, որ մարսերենը պարտադիր է:

Դուք կարծում եք, թե պատմությո՞ւնն է դժվար, կամ քերականությո՞ւնը, կամ թվաբանությո՞ւնը, կամ... եթե դուք էլ սկսեք մարսերեն սովորել, անմիջապես մի ջերմ սեր կծնվի ձեր մեջ մյուս բոլոր առարկաների նկատմամբ:

Առաջին դասից անմիջապես հետո, երբ մարսերենի ուսուցչուհին մեզ ընդհանուր ակնարկով պատմեց նոր առարկայի էությունը, մենք համոզվեցինք, որ թեկուզ «ա» հնչյունը ասել կարողանալու համար պետք է օրերով տառապենք: Մենք հավաքվեցինք ներքնահարկում, սպորտդահլիճի մոտ ու սկսեցինք արտակարգ խորհուրդը:

Իհարկե, այդ արտակարգ խորհրդի արդյունքն այն եղավ, որ շատերը ուրիշ ելք չգտնելով, ասացին.

— Էյնշտեյնի տեսությունից գլուխ կարողանում ենք հանել, չէ՞... Մարսերենից էլ գլուխ կհանենք: Վարժության հարց է...— ու հեռացան:

Մյուս մասը ուրիշ ելք չգտնելով, հայտարարեց.

— Էյնշտեյնի տեսությունից գլուխ կարողանում ենք պահել, չէ՞... Մարսերենից էլ գլուխ կպահենք: Վարժության հարց է...—ու հեռացան:

Մնացինք երեքով. ես, Արմենն ու Լիլիթը:

Մի քիչ որար նայեցինք տարակուսանքով: Հետո Լիլիթը հարցրեց.

— Իսկ մենք ի՞նչ ենք անելու:

Արմենն անտարբեր տեսքով սկսեց սուլել:

— Չեմ կարծում, թե մարսերենը ինձ երբևէ պետք գա, — ասացի ես: — Զանգը տվեց: Գնանք:

Այս ամենն առաջին դասից հետո էր:

Անցան օրեր, անցան շաբաթներ, անցան նույնիսկ ամիսներ:

Ես արդեն վաղուց նկատել էի, որ ամբողջ դասարանում միայն Արմենն է, որ կարողանում է մարսերենից գլուխ հանել: Նա ոչ միայն ճշգրիտ արտաբերում էր այդ տարօրինակ հնչյունները, ոչ միայն կարողանում էր դրանցով բառեր կազմել, այլև շատ հանգիստ, կարծես բնիկ մարսեցի լիներ, երբեմն նույնիսկ զրուցում էր ուսուցչուհու հետ: Իսկ ուսուցչուհին նույնքան հանույքով նրան «գերազանց» էր նշանակում, որքան և մեզ՝ «երկուսներ», «երեքներ»... չէ՛, «չորսեր» չըկային դեռևս:

Որոշեցի արտակարգ խորհուրդ գումարելու առաջարկ անել: Բայց մտածեցի, որ անցյալ անգամվա պես մի՛ մասը մի բան ասելով պետք է հեռանա, մյուս մասը՝ մեկ ուրիշ:

Եվ մի օր էլ ես ու Լիլիթը պատին սեղմեցինք Արմենին:

— Ի՞նչ եք ուզում, — ապշած հարցրեց Արմենը: — Միևնույն է, ֆուտբոլի տոմս չեմ զիջի:

— Ֆուտբոլի տոմսը թող քեզ մնա, — ատամներիս արանքից ասացի ես: — Դու մարսերենից խոսիր:

— Մարսերե՞ն խոսեմ, — իբր թե չհասկացավ Արմենը, — բայց դուք չեք հասկանա:

— Մարսերեն խոսելդ էլ թող քեզ մնա,—ասացի ես:

— Իհարկե, թող քեզ մնա, — հաստատեց Լիլիթը:



— Անգիր ես անում, հա՞, — սարսափելի ձայնով հարցրեցի ես:

— Հայրիկը դասատո՛ւ է վարձել, — ենթադրեց Լիլիթը:

— Թե՞ գլխիդ թասակ ես հագցնում և էլեկտրական հոսանք բաց թողնում, — ծաղրեցի ես:

— Կամ գուցե իմաստուն դառնալու կախարդա-

կան հաբե՞ր ես կուլ տալիս, — ծաղրեց Լիլիթը:
— Անմահական ջուր է ճարել ու ամեն օր քնելուց առաջ կես բաժակ խմում է, — ես զգացի, որ չափն արդեն անց եմ կացնում:
Ինքս էլ չգիտեի, թե ես ու Լիլիթը ինչ ենք ուզում խեղճ Արմենից, որը կարկամած մերթ ինձ էր նայում, մերթ՝ Լիլիթին: Ասենք, թե անգիր է անում: Մեզ ի՞նչ... Թող անգիր աներ: Ասենք, թե դասատու են վարժել: Մեզ ի՞նչ...
Բայց և այնպես, մենք պատին էինք սեղմել Արմենին ու շատ էինք ուրախանում, տեսնելով, որ մեր հարցերի տարափի տակ նա կուչ է եկել, խեղճացել ու պլշած աչքերով է մեզ նայում:
— Ճիշտ եք ասում... — հանկարծ խոսեց Արմենը: — Անմահական ջուր չունեմ, բայց... ազնիվ խոսք, ծեզ էլ կտամ...
— Ի՞նչ — հարցրեցի ես, նախազգալով, որ այստեղ մի մութ հաշիվ կա: — Ի՞նչ կտաս...
— Հաբերից:
— Կախարդական հաբե՞ր, — բացականչեցի ես: — Սրան տեսեք... Ընկեր է... Ո՛նց չէ... Ես էլ հավատացի. Լիլի՛թ, դու հավատո՞ւմ ես:
— Չեմ հավատում, — հայտարարեց Լիլիթը:
Իսկ Արմենը քիչ մնաց լաց լիներ, որ իրեն չեն հավատում:
— Ազնի՛վ խոսք, — բացականչեց նա: — Պապիկս տվեց: Դեռ էլի ունեմ...
— Սպասիր, թե որ լավ ընկեր ես, ամեն բան հերթով պատմիր:
— Այստեղ ինչպե՞ս պատմեմ, — ասաց Արմենը: — Գնանք այգում նստենք կպատմեմ:
Ես ու Լիլիթը համաձայնեցինք:
Գրեթե վազելով հասանք դպրոցից քիչ հեռու գտնվող այգին: Մենք այնտեղ մեր նստարանն ունեինք ծառուղիներից մեկում: Ազատ ժամեր ունենալիս կամ մեծ դասամիջոցին նստում էինք այդ նստարանին և հանգիստ արտագրում տնային աշխատանքները, որոնք շատ պարտաճանաչ կերպով կատարած էր լինում միայն Արմենը: Ինձ երբեմն թվում էր նույնիսկ, որ Արմենը տնային աշխատանքներն անում է ոչ թե ուսուցչին ներկայացնելու համար, այլ որպեսզի մենք արտագրենք ու դասի ժամանակ էլ չխայտառակվենք:
— Դե պատմի՛ր, — ասացի ես: — Միայն թե՝ չփչես հա՛... Հակառակ դեպքում՝ վերջ:
Մենք ավելի հարմար տեղավորվեցինք նստարանի վրա:
— Ես փորձարկում եմ այդ հաբերը, — ասաց Արմենը:
— Արդեն փչում ես, — նկատեցի ես:
— Ազնիվ խոսք, — երդվեց Արմենը: — Դեռ ամռանը պապիկս ինձ մի տուփ հաբ տվեց:
— Տուփի մեջ քանի՞ հատ էր, — հարցրեց Լիլիթը:
— Տասը հատ:



— Քանի՞սն ես կուլ տվել, — անհանգստացա ես: — Գիտեմ, որ դու շատ ագահն ես: Եվ դա մարդու համար մեծ թերություն է, և վերջ:
— Չորս հատ, — ասաց Արմենը, ու ես հանգիստ շունչ քաշեցի: — Տվեց ու ասաց, որ եթե խմեմ, դասերս ավելի հեշտությամբ կպատրաստեմ, — շարունակեց Արմենը:
Բայց Լիլիթը կասկածեց:
— Այդ հաբերը, պապիկս ասում է, որ պատրաստված են արհեստական սպիտակուցից, — ասաց Արմենը:
— Հետո ի՞նչ, — ասացի ես:
— Իսկապես, հետո ի՞նչ, — կրկնեց Լիլիթը:
— Հետո... հետո, պապիկս է ասում, որ այդ արհեստական սպիտակուցի մոլեկուլներին հատուկ տեղեկություններ են հաղորդված, — շարունակեց Արմենը: — Հաբը կուլ տալուն պես, սկսում է մարսվել: Տեղեկություններով հարուստ մոլեկուլները արյան միջոցով հասնում են նյարդային ու ուղեղային հյուսվածքներին: Հասկացա՞ք:
— Ըհը՛, — ասաց Լիլիթը:
— Նշանակում է, պապիկս է ասում, արդեն ուղեղի բջիջներում բույն են դնում տեղեկություններ կրող մոլեկուլները: Հասկանո՞ւմ եք, ինչ է կատարվում:
— Ըհը՛, — ասաց Լիլիթը:
— Մի հաբի մոլեկուլներին կարելի է տեղեկություններ տալ մարսերենի մասին, մեկ ուրիշին՝ թվաբանությունից, մի այլ հաբի՝ պատմությունից: Ես հաբը ընդունելուց հետո, բավական է, որ մի անգամ բացեմ դասագիրքը, անմիջապես սովորում եմ: Կարծես շատ վաղուց իմացած լինեմ մարսերենն ու հետո մոռացած: Կարծես վերհիշում եմ: Հասկացա՞ք:
— Եթե մեկ էլ հարցնես «հասկացա՞ք»՝ վերջ.

ամենայն սառնասրտությամբ ասացի ես։ — Որտե՞ղ են հաբերը։

— Տանը,— պատասխանեց Արմենը։

— Ե՞րբ կբերես։

— Ուզո՞ւմ եք, հիմա գնանք տամ։

— Ուզո՞ւմ ենք, Լիլի՛թ,— հարցրեցի ես։

— Ջենք ուզում,— ասաց Լիլիթը։ Վաղը կբերես։

— Ճիշտ է,— հաստատեցի ես։ Հիմա չենք ուզում։ Իսկ եթե վաղը հանկարծ մոռացար՝ վերջ։

Հետևյալ օրը Արմենը վեց հատ հաբ բերեց։ Դասերից հետո մենք դարձյալ այգի գնացինք, և Արմենը հաբերը հանելով, երեք հատը ինձ տվեց, մյուս երեքը՝ Լիլիթին։

— Ուրեմն, սա էլ քո ընկերությունն է, հա՞,— վրդովվեցի ես։ — Ուրեմն, դու չորս հատ ես կուլ տալիս ագահի պես, իսկ մենք՝ երե՛ք...

— Պապիկս ասում է...

— Ես չեմ ուզում իմանալ, թե ինչ է ասում քո պապիկը,— ընդհատեցի ես։— Բայց որ քո արածը ընկերություն չէր, փաստ է։ Ճի՞շտ է, Լիլիթ։

— Ինչ խոսք,— ասաց Լիլիթը՝ հաբը կուլ տալով։

Նա ուզում էր մյուսն էլ կուլ տալ, բայց Արմենն ասաց.

Բայց մարսերենից բան դուրս չէր գալիս։ Ո՛չ ես էի կարողանում գլուխ հանել, ո՛չ էլ՝ Լիլիթը։

Ժամերով նստում էի դասագիրքը ձեռքիս ու ոչինչ չէր ստացվում։ Երբեք այնպիսի զգացողություն չէի ունենում, որ կարծես վաղուց իմացած լինեմ մարսերեն ու հետո՝ մոռացած։ Եվ ոչ էլ թվում էր, թե ես կարծես վերհիշում եմ։

Պարզվեց, որ Լիլիթի մոտ էլ ոչինչ չի ստացվում։

Իհարկե, համենայն դեպս, այդքան պարապելուց հետո ես ու Լիլիթը կարողացանք մարսերենից մեր թվանշանները գոնե «չորսի» հասցնել։

— Օրվա մեջ դու որքա՞ն ես մարսերենով զբաղվում,— մի օր էլ հարցրեցի Արմենին։

— Տասնհինգ րոպե։

— Լսո՞ւմ ես, Լիլիթ։ Տասնհինգ րոպե՛... Իսկ ես այնքան եմ սերտում, որ գլուխս սկսում է պայթել։ Քո տված հաբերից բան դուրս չի գա։ Գուցե պիրամիդո՞ն ես տվել մեզ,— հանկարծ կասկածեցի ես։ — Հը՞, գուցե՝ ասպիրի՞ն...

— Կավիճ տված կլինի,— չափազանցրեց Լիլիթը։

— Չէ, ազնիվ խոսք,— անմիջապես խեղճացավ Արմենն ու աչքերը պլշեց։ Ու ես տեղնուտեղը կռահեցի, որ մի նոր անակնկալ է ինձ սպասում։



— Բոլորը միանգամից չի կարելի։ Հաբերը պետք է ընդունենք մեկ շաբաթվա ընթացքում։

— Գնանք,— ասացի ես։

— Իսկ ընկերությո՞ւնը,— անհանգստացավ Արմենը։

— Մենք առաջվա պես ընկերներ ենք,— հանգստացրեցի ես նրան։— Երեք ընկերներ։ Իսկական ընկերներ։ Չէ՞, Լիլիթ։

— Ամենաիսկական,— հաստատեց Լիլիթը։

Անցավ մի շաբաթ, հետո երկու, հետո մեկ ամիս...

— Չէ՛, խոսիր։ Ի՞նչ ես պապանձվել,— ասացի ես։

— Պապիկս ասաց...— սկսեց Արմենը։

— Դու քո ասելիքն ասա։

— Պապիկս ասաց, որ ամեն առարկայից երկու հաբ է տվել,— շտապ-շտապ վրա տվեց Արմենն ու շունչ առավ։ — Երկու հատ՝ մարսերենի համար, երկու հատ՝ աշխարհագրության, երկու հատ՝ թվաբանության, երկու հատ...

Ես շփոթված նայեցի Լիլիթին։

Լիլիթն էլ շփոթված ինձ նայեց։

Հետո մենք շփոթված նայեցինք Արմենին: Ես այդ պահին միայն կռահեցի, որ ամբողջ օրը մարսերենով զբաղվելուց հետո, ախր շատ քիչ ժամանակ էր մնում մյուս առարկաների համար, ու ես, ասենք, պատմության դասագիրքը կարողանում էի թեթևակի թերթել միայն հինգ րոպե տևող դասամիջոցին: Թեթևակի թերթում ու կարծես տեսնում էի այն ամենը, ինչ գրված էր դասագրքում ու տեսնում էի նաև այն ամենը, ինչ չէր գրված դասագրքում: Իսկ թե ինչպես էի հիշում թվականները... Ուզու՞մ եք, հիմա էլ կարող եմ անգիր ասել...

— Ուրեմն, ի՞նչ է ստացվում... կմկմացի ես:

— Չգիտեմ,— պատասխանեց Արմենը:

Մարսերենի հաբերը դու՞ ես կուլ տվել,— հարցրեց Լիլիթը: -

— Երևի,— պատասխանեց Արմենը:— Բայց թե մյուս երկուսը ո՞ր առարկայի հաբերն էին, չեմ կարողանում գլուխ ընկնել: Երևի թվաբանության են եղել: Ինչի՞ս էր պետք: Առանց այդ էլ ես թվաբանությունից շատ ուժեղ եմ: Ա՛յ, եթե պատմության հաբերը կուլ տված լինեի...

Պատմությունը ես եմ կուլ տվել,— հայտարարեցի ես: Բայց դա ոչ մի նշանակություն չունի: Ախր մենք էլ էինք ուզում մարսերեն սովորել, չէ՞, Լիլիթ:

— Իհարկե, ուզում էինք,— հաստատեց Լիլիթը:

— Գուցե պապիկից խնդրե՞ս,— հարցրեցի ես:

Պապիկս վաղուց վերադարձել է Յուպիտեր, ասաց Արմենը:— Նա ընդամենը երկու շաբաթով էր եկել:

Ափսո՛ս, հապա ի՞նչ անենք,— արդեն հուսահատվեցի ես:

— Կպարապենք,— պատասխանեց Արմենը:— Ամեն օր ես կպարապեմ ձեզ հետ, լա՞վ: Ես ախր հիանալի մարսերեն եմ խոսում: Հեշտ է:

— Կպարապե՞ս,— կասկածեցի ես:

Կպարապի՛,— համոզված ասաց Լիլիթը:

— Իհարկե, ասաց Արմենը:— Թե չէ՝ ու՞ր կմնա մեր ընկերությունը:

Տեսնու՞մ եք: Մի հիսուն տարի առաջ երևի այսպիսի պատմություններ չեն եղել: Հիսուն տարի առաջ հրատարակված գրքերում, որոնք դուք երևի կարդացած կլինեք, միայն ինչ-որ թասակների մասին էին գրում, որ ապագայում, այսինքն՝ հիմա, պետք է օգտագործվեին դպրոցներում: Էվ հիսուն տարի առաջ էլ դպրոցում սովորում էին միայն Նյուտոնի ձգողականության օրենքները:

Ի դեպ, մոռացա ասել, որ ֆիզիկայի հաբերից մեկն ինձ էր բաժին ընկել, մյուսը՝ Լիլիթին: Այնպես որ մեզ հիմա Էյնշտեյնի տեսությունն էլ չի սարսափեցնում:




ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ա՛մպ, սպասի՛ր՝ նկարեմ,
Մի քիչ տեղդ հանգի՛ստ կաց...
Խանգարում ես, ա՜յ արև,
Ի՞նչ ես կանգնել դեմ-դիմաց.
Դե լա՜վ... մի քիչ համբերի՛.
Շուտով ամպը գայլի պես
«Համփ» կանի ու կտանի,
Սարի ետև կուտի քեզ...

Ճիշտ որ, ամպը մոտեցավ,
Ծածկեց երեսն արևի,
Ծածկեց բայց և վախեցավ.
Ա՜խ, այրվում է երևի...

— Ա՛մպ, սպասի՛ր՝ նկարեմ.
Բայց ամպն հիմա դարձավ ձի.
Ո՞նց է փախչում, ա՜յ արև,
Իզուր ամպին գովեցի:

Տղան արև նկարեց
Ջրաններ շողերով,
Բայց նկարն իր ավարտեց՝
Ամպն էլ մոտը թողնելով...





## ՓՈՔՐԻԿ ԷԻ

ՄԻՔԱՅԵԼ ՔԱՆՔԱՆՅԱՆ

Փոքրիկ էի ես ձեզ նման,
Սիրում էի ծաղիկ ու գետ,
Անցան օրերն իմ մանկության,
Կյանքս ձուլվեց քարերի հետ:

Ես էլ դարձա համեստ քարտաշ,
Մուրճս երգեց ձայնով վճիտ,
Ու քարերը արևի տակ
Դարձան պալատ, տուն ու ժպիտ:

Ձեռքիս գիրքը քարն է հիմա,
Ես քարեր եմ հղկում անվերջ.
Ով տուն չունի, ես տուն կտամ
Երկինք հասնող շենքերի մեջ:





# Երկնագույն ՈՒԼՈՒՆՔԸ

ՄԱՐԻԱ ԿՐՅՈՒԳԵՐ

## ԹԵ ԻՆՉ ԵՂԱՎ ՀԵՏՈ ՄԵՂՐԱԲԼԻԹԵ ՏՆԱԿՈՒՄ

Պետրիկն ու Կարոլինկան բաց արին կախարդի տնակը շրջապատող կանաչ ցանկապատի ճռճռան դռնակը։ Պատուհանների տակ փռված էր պարտեզը՝ թղթե ծաղիկներով և կանաչ ու սրճագույն ներկված ծառով, որ շինված էր ֆաներայից և թղթից։ Ծառից կախված խնձորներն էլ ինչ-որ բանից էին պատրաստված։ Հավանաբար՝ նույնպես կարմիր գույնի թղթից։

— Ափսո՜ս, որ այս բոլորը իսկական չեն,— ասաց Պետրիկը։ — Ա՜յ, եթե իսկական լինեին։ Դե, դու ասա, Կարոլինկա, մի՞թե չէիր ուզենա, որ այս մեղրաբլիթե տնակը իսկական լիներ։

— Իհարկե, կուզենայի։ Կուզենայի, որ տնակն իսկական-իսկական լիներ, որ տնակում մի իսկական կախարդ ապրեր, կատուն էլ իսկական լիներ, ամե՜ն ինչ, ամե՜ն ինչ իսկական լիներ,— բացականչեց Կարոլինկան՝ անզգուշաբար ձեռքում սեղմելով երկնագույն ուլունքը։

Նրանք դեռ իրենց ետևից չէին փակել ցանկապատի դռնակը, երբ զգացին տնակի առաջ տարածված ծաղիկների բուրմունքը։ Տանիքին կանգնած բուն անհանգիստ շարժվեց և իր դեղին աչքը թարթելով, աչքով արեց։ Կատուն ոտքի ելավ, ձգվեց, իսկ հետո բարեկամաբար մռմռալով՝ ցած թռավ տանիքից ու սկսեց քսվել Կարոլինկայի ոտքերին, ինչպես որ անում են աշխարհի բոլոր խաղաղ դաստիարակված կատուները։

— Մի՛ վախեցիր, նա քեզ ոչ մի վնաս չի տա,— շշնջաց Պետրիկը։

— Ինքս էլ չեմ վախենում,— պատասխանեց Կարոլինկան նեղացած։— Ի՞նչ ես ասում, Պետրիկ։ Ես կատուներին շատ եմ սիրում։

— Բայց չէ՞ որ սա կախարդված է,— հիացմունքով ճիչեցրեց Պետրիկը։

— Ավելի լավ,— գլխով արեց Կարոլինկան։— Ես ուղղակի պաշտում եմ կախարդված կատուներին։ Մի տես ինչ լավի՜կն է, մորթին էլ՝ ոնց որ իսկական թավիշ։

Սկիզբը՝ Նախորդ համարում։

Հանկարծ բացվեց կանաչ դռնակը, և տնակից դուրս եկավ կախարդը։

Սիրալիր ժպտալով՝ նա երեխաներին տուն հրավիրեց։ Նրանք առանց երկար-բարակ մտածելու ներս մտան։

— Դուք մեղրաբլիթ սիրու՞մ եք,— հարցրեց պառավ կախարդը։

— Այո, ես շատ եմ սիրում,— խոստովանեց Կարոլինկան։

— Ա՜յ քեզ հիանալի բա՛ն,— ուրախացավ կախարդը և վառարանից հանեց նոր թխված մեղրաբլիթները։

— Համեցեք,— հյուրասիրեց նա։

Մեղրաբլիթները շա՜տ համեղ էին։ Բայց մի՞թե հնարավոր էր այդքանն ուտել։ Մյուս կողմից էլ, եթե բոլորը չուտես, մեկ էլ տեսար, կախարդը նեղացավ։

— Դուք կարող եք հյուրասիրել երեխաներին,— ասաց կախարդը, ասես կռահելով երեխաների միտքը։

— Բայց ինչպե՞ս անենք, չէ՞ որ մենք անտեսանելի ենք։



— Դե, ես ձեզ կարող եմ մի առժամանակ տեսանելի դարձնել,— և փոքր մատը դիպցրեց Կարոլինկային ու Պետրիկին,— հիմա արդեն բոլորը կտեսնեն ձեզ։

— Իսկ հետո մենք կարո՞ղ ենք նորից անտեսանելի դառնալ,— անհանգստացավ Պետրիկը։

— Իհարկե, հենց որ ուզենաք։

Մինչ այդ, երեխաներն արդեն շրջապատել էին կախարդի տնակը։ Ծնողներն էլ հաճույքով էին դիտում տնակը։ Բոլորին էլ դուր էին գալիս մեղրաբլիթե տնակը, նրա շուրջը փթթող ծաղիկները և

իմաստուն կատուն, որը քթի տակ ինչ-որ կատվային երգ էր մռմռում: Իսկ երբ Կարոլինկան և Պետրիկը դուրս եկան տնակից և սկսեցին մեղրաբլիթներ բաժանել երեխաներին, բոլորի ուրախությանն էլ չափ ու սահման չկար:

— Վա՜յ, հանկարծ ճիչեց կախարդը, — ես մոռացա ձեզ ասել, որ այդ մեղրաբլիթներն այնքան էլ սովորական չեն: Դրանք ուտողը ավելի լավ և բարի է դառնում: Դե, ասենք, ինքներդ հիմա կտեսնեք:

Եվ իրոք, սկսեցին տարօրինակ բաներ կատարվել: Մարդիկ միմյանց ճանապարհ էին տալիս, մեկը մյուսին չէր հրում, տղաները թույլ էին տալիս, որ աղջիկներն իրենցից առաջ կանգնեն: Մի բավականին մեծ աղջիկ արձակեց իր կարմիր ժապավեններ և նվիրեց լաց լինող փոքրիկ աղջկան, որը կորցրել էր իր ժապավենը: Իսկ եթե հանկարծ պատահում էր, որ մեծերից որևէ մեկը մի կտոր մեղրաբլիթ էր ուտում, իսկույն սկսում էր հասկանալ, որ մանուկների գործերն էլ կարևոր են, նույնիսկ ավելի կարևոր, քան մնացած բոլոր գործերը: Բոլորն ուզում էին բարի լինել բոլորի հանդեպ:

Այդ րոպեին պարսպի կանաչ դռնակին մոտեցավ մի կին՝ զանազան փետուրներով զարդարված տարօրինակ գլխարկով, և ձեռքը մեկնեց առաջ:

— Խնդրեմ: Ահա ձեզ հիանալի մեղրաբլիթ՝ շոկոլադով, — սիրալիր ասաց Կարոլինկան:

— Շատ շնորհակալ եմ, — պատասխանեց տարօրինակ գլխարկով կինը, — ինձ պետք չեն քո բլիթները, պստլիկս: Դրա փոխարեն ինձ մի ուրիշ բան տուր:

— Իսկ ի՞նչ կուզենայիք, հարցրեց Կարոլինկան:

Տարօրինակ գլխարկով կինը գլուխը բարձրացրեց: Միայն հիմա Կարոլինկան նկատեց նրա սուր քիթը և փոքրիկ, պսպղացող աչքերը:

— Մեղրաբլիթի փոխարեն ինձ տուր քո երկնագույն հուլունքը, — սուլոցով շշնջաց կինը, — ինձ տուր իսկույն — Եվ իր նիհար, ճանկերի նման ձեռքը մեկնեց հուլունքին:

Չե՞մ տա, սա ի՞մ հուլունքն է, — ճչաց Կարոլինկան:

— Ի՞նչ պատահեց քեզ, — հարցրեց Պետրիկը մոտ վազելով:

— Սա Ֆիլոմենան է, ես իսկույն ճանաչեցի: Ուզում է խլել մեր հուլունքը: Պետք է փրկել սրա ձեռքից:



— Հարկավոր է իսկույն անտեսանելի դառնալ: Շո՜ւտ արա, — գոռաց Պետրիկը, որպեսզի կարողանան փախչել:

Նրանք նորից անտեսանելի դարձան, բայց ափսոս. չէ՞ որ երկնագույն հուլունքը տեսանելի էր: Վարդագույն մետաքսաթելից կախված, նա ճոճվում էր և պսպղում երկնագույն փայլով: Հուլունքն այնքան փոքր էր, որ ոչ ոք չէր էլ նկատում, բայց Ֆիլոմենան նա տեսնում էր:

— Հա՜, — բղավեց Ֆիլոմենան: Մեկ է, իմ ձեռքից չեք պրծնի, ես կխլեմ հուլունքը:

Պետրիկը արագ բռնեց Կարոլինկայի ձեռքը և նրանք սկսեցին փախչել: Հուլունքը փայլում էր օդում ասես կայծող երկնագույն շանթի նման: Ֆիլոմենան իսկույն նետվեց հուլունքի հետևից:

— Արա՛գ, արա՛գ վազիր, — շշնջում էր Պետրիկը, քաշելով Կարոլինկայի ձեռքից, — արա՛գ:

Նրանք աննկատելիորեն մի կերպ տեղ բացելով՝ մխրճվեցին ամբոխի մեջ, Ֆիլոմենան՝ նրանց հետևից:

— Չհամարձակվե՞ք հրել, — զայրանում էին մարդիկ: — Տիկին, խելքներդ թռցրե՞լ եք, ի՞նչ է: Ի՞նչ անդաստիարակ կին է:

— Ճանապա՜րհ տվեք, — բղավում է կատաղած Ֆիլոմենան՝ հովանոցը թափահարելով:

Պետրիկի և Կարոլինկայի բախտը բերեց. նրանք հանկարծ հայտնվեցին շղարշե կտորների բաժնում: Հենց այստեղ էր, որ Ֆիլոմենան խճճվեց վարագույրներից մեկի մեջ և հասակով մեկ փռվեց հատակին: Նա թպրտում էր ցանցն ընկած ձկան պես և թվում էր, թե հուլունքն արդեն փրկված է, երբ հանկարծ բոլորովին անսպասելիորեն, Կարոլինկայի կողքով անցնող գնորդներից մեկի նոր

գնած քամիչի կեռը ընկավ անտեսանելի Կարոլինկայի վզի վարդագույն թելին: Թելը կտրվեց, և հուլունքն սկսեց գլորվել լինոլեումե հարթ հատակի վրայով: Եվ որովհետև գլորվելիս հուլունքը մեղմորեն զրնգում էր, Ֆիլոմենան լսեց այդ ձայնը: Զուր չէր, որ նա այնքան մեծ ու մազակալած ականջներ ուներ: Զարմանալի ճարպկությամբ նա դուրս պրծավ վարագույրի միջից և հովազի պես նետվեց դեպի հուլունքը: Բայց նա դիպավ անտեսանելի Պետրիկին և անտեսանելի Կարոլինկային: Նրանք նույնպես ցած էին նետվել, հուլունքը վերցնելու համար: Հուլունքին այժմ երկու վտանգ էր սպառնում: Նախ՝ նա կարող էր Ֆիլոմենայի ձեռքն ընկնել և հետո անցորդները կարող էին ոտքի տակ տալ: Շատ լարված վիճակ էր, Ֆիլոմենայի ճանկերն արդեն մոտենում էին հուլունքին, բայց Կարոլինկան կարողացավ վերջին պահին փրկել հուլունքը: Իսկ Պետրիկն այդ ժամանակ զբաղված էր Ֆիլոմենային խանգարելով: Երբ նա հատակին սողալով աշխատում էր որսալ հուլունքը, Պետրիկն, ինչքան ուժ ուներ, բռնել էր նրան: Պարզ է, որ նորից պետք է մարդիկ հավաքվեին: Բոլորը զարմացած նայում էին վայրենի մռնչոցով հատակի վրա թավալվող Ֆիլոմենային: Չէ՞ որ ոչ ոք չէր տեսնում Ֆիլոմենայի հետ կռվի բռնված Պետրիկին:

— Այդ կինը հիվանդ է,— ձայն տվեցին չորս կողմից,— երևի նոպան բռնել է: Ինչպես երևում է, շատ վտանգավոր հիվանդություն է: Անմիջապես շտապ օգնությո՛ւն կանչեք:

Մի քանի րոպե չանցած՝ եկավ շտապ օգնության մեքենան: Սպիտակ խալաթ հագած բժիշկը և երկու սանիտարները սկսեցին զբաղվել Ֆիլոմենայով, որը դեռ շարունակում էր բղավել.

— Բռնեցե՛ք դրանց, բռնեցե՛ք: Ես պետք է դրանցից խլեմ երկնագույն հուլունքը:

Սանիտարները հազիվ կարողացան Ֆիլոմենային խցկել շտապ օգնության մեքենան և դուռը ամուր փակել: Մեքենան շարժվեց:

— Տուն գնանք, ինչպես երևում է, արդեն շատ ենք ուշացել, — ասաց Պետրիկը:

— Գնանք, Պետրիկ, բայց մենք մոռացանք հրաժեշտ տալ կախարդին և սև կատվին: Դա շատ անվայելուչ է:

Մինչ այդ, կախարդն արդեն բաժանում էր վերջին մեղրաբլիթները:

— Ես մի քանի հատ էլ ձեզ համար եմ թողել,— ասաց նա:— Ես գիտեմ, որ դուք պետք է տուն վերադառնաք: Եվ ես նորից մի փայտե խաղալիք կդառնամ: Բայց եթե նորից ինձ մոտ գաք, շատ ուրախ կլինեմ: Հաջողություն եմ ցանկանում: Զգուշացիր Ֆիլոմենայից, Կարոլինկա: Նա վատ կին է: Եթե հուլունքը նրա ձեռքն ընկներ, նա շատ չար գործեր կաներ: Մնաք բարով:

Կախարդը նորից դարձավ փայտե խաղալիք, միայն կատուն հասցրեց մի քանի անգամ բարեկամաբար մլավել, մինչև տան կտուրին թռչելն ու շորերից կախված մի անշարժ խաղալիք դառնալը:

(Շարունակելի)





# ՀՈՒՍԻԿՆ ՈՒ ՓԻՍԻԿԸ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Ծույլ Հուսիկի՛ն նայեցեք
Ու զարմանքից քարացե՛ք.
Ման է գալիս ննջելով,
Խոսում՝ հազիվ շնչելով:
Նրան գործի թե դնես,
Կասի. — Չէ՛, չէ՛, թույլ եմ ես:
— Հուսի՛կ, ջո՛ւր բեր ծորակից,
Հեռո՛ւ մնա կրակից,
Հուսի՛կ, մարզա՛նք կատարի:
— Վա՜յ, չէ՛, շունչս կմարի:
— Հուսի՛կ, վեր կա՛ց, գնա՛, ե՛կ:
— Ուժից կընկնեմ, խնայե՛ք...
— Հուսի՛կ, դո՛ւրս եկ խաղալու,
Ձմուշկներով սղղալու...
— Չէ՛,— ասում է,— ես դրսում
Դողդողում եմ ու մրսում:—
Սլանում են սարից ցած,
Ծիծաղում են սրտաբաց
Ընկերները Հուսիկի,
Իսկ նա կողքին փիսիկի
Կուչ է գալիս սենյակում
Եվ օդանցքն է դեռ փակում:
Կրակին է վազում մոտ,
Ինչպես մրսած փիսիկը.
Իր սեփական կրակով
Չի տաքանում Հուսիկը:

Նկ. ՍԵՅՐԱՆ ԽԱԹԼԱՄԱՋՅԱՆԻ

# Վ. Ա. ՍԵՐՈՎ

Ռուսական գեղանկարչության գագաթն է Սերովը. ռուսական ոգու լավագույն արտահայտությունը՝ կերպարվեստում: Ահա թե ինչու Սերովը սիրելի է նաև աշխարհի բոլոր ժողովուրդներին:

Լրացավ մեծ արվեստագետի ծննդյան հարյուր տարին:



ԻՆՔՆԱՆԿԱՐ

ՄԻԿԱ. ՄՈՐՈԶՈՎ.

# ԹԻԹԵՌՆԻԿԸ

(Արարատյան լեգենդ)

ԱՐՄԱՆ ԿՈԹԻԿՅԱՆ

Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

Սիրուն մի թիթեռնիկ դաշտում ծաղկից ծաղիկ էր թռչկոտում՝ ուրախ և անհոգ: Նրա խատուտիկ թևերը գունազարդված էին վարդագույն, լազուր, սպիտակ, ծիրանի և դեռ ուրիշ աննկարագրելի գեղեցիկ գույներով. այնքան գեղեցիկ և հմայիչ, ինչքան գարնանային նորածագ արևի շողը:

Թիթեռնիկը մեկ նստում էր դաշտի բուրումնավետ վայրի մեխակների ատեջքին, մեկ բարձրանում էր նոր ծաղկած դեղձենու կատարը, ուր հազիվ մի րոպե էր մնում, նորից իջնում էր ցած և կանաչ մարգագետնի ծոցում մի պահ կորչում էր ծաղիկների բազմահազար գույների մեջ. հետո շատ չանցած՝ նորից էր հայտնվում:

Մի փոքրիկ երեխա, որ իր մոր հետ դաշտ էր դուրս եկել զբոսնելու, տեսավ այն ակնթարթ, սիրուն թիթեռնիկին և հմայված նրա հեքիաթային գեղեցկությամբ վազեց հետևից, որ բռնի:

Թիթեռնիկը, որ վարժված էր նման հետապնդումների, անհոգ ու անխռով շարունակում էր թռչկոտել երեխայի աչքի առաջ, կարծես ծիծաղելով նրա



վրա: Երեխան հազիվ էր ձեռքը երկարում, որ բռնի թիթեռնիկին, երբ սա պայծառ թևերը բաց-խուփ անելով՝ անսպասելի պոկվում էր նստած տեղից և շարունակում էր թռչկոտել:

Երեխայի մեջ հետզհետե ավելի ու ավելի էր սաստկանում թիթեռնիկին բռնելու տենչը: Տարված այդ մտքից ու մոռացած ամեն ինչ, նա այնքան երկար ժամանակ վազեց թիթեռնիկի հետևից, որ արդեն բոլորովին հեռացել էր մորից:

Բուրալի և ծաղկաշատ դաշտից թիթեռնիկն անցավ անջրդի մի բացատ՝ փշալից թփերով ծածկված: Երեխան անընդհատ հետևում էր նրան: Թիթեռնիկը մեկ նստում էր մորենու դեղին կոճակին, մեկ կանգ էր առնում անհրապույր մի տատասկի վրա, մեկ բարձրանում էր անանուն մի փշաթփի ծայրը. մեկ էլ իջնում էր ցած և կորչում մացառուտների մեջ. և երբ երեխան կամացուկ մոտենում էր, համոզված, որ ահա այս անգամ կբռնի թիթեռնիկին, սա հանկարծ թափահարելով թևերը՝ փախչում-հեռանում էր:

Լեգենդն ասում է, որ երեխան այնքան ժամանակ հետապնդեց թիթեռնիկին, մինչև դարձավ պատանի:

Թիթեռնիկը, կարծես ձեռ առնելու համար սիրատենչ պատանուն, երբեմն երկու քայլ հեռավորության վրա նստում էր մի վայրի ծաղկի պսակին, ապա չարաճճի աղջկա նազանքներով և խաղերով փախչում էր, վշտահար թողնելով իրեն հետապնդողին:

Եվ այսպես անցնում էին րոպեներ, անցնում էին ժամեր, անցնում էին օրեր և տարիներ իրար հետևից, մինչև որ մի օր էլ թիթեռնիկն ու երիտասարդը (որովհետև լեգենդն ասում է, որ պատանին արդեն երիտասարդ էր դարձել) հասան գագաթը մի լեռան, որը կոչվում էր «Կյանքի վերջին կայանը»:

Երիտասարդը կանգ առավ մի պահ և մտածեց. «Ես չգտնա՞մ արդյոք»: Նա լեռան գագաթից դիտեց ու [illegible] աջ մասում մի սքանչելի այգեստան տեսավ՝ պտղատու ծառերով լեցուն, և դմայլելի արոտավայրեր տեսավ՝ դալար-դալարուն. ապա ձախ մասում տեսավ բարձր պատերով շրջապատված մի տարածություն (այդպես էլ ասված է լեգենդում), որի վրա ցիրուցան նշմարվում էին քարե փոքրիկ կոթողներ, մի մասը՝ կանգուն, մի մասը՝ պառկած վիճակում:




Ջովանինոն մտամոլոր
Տրամվայը կորցրեց մի օր.
Կորցրեց ձայնի երրորդ մասը,
Կորցրեց գլխի վերջին մազը
Ախորժակն էլ կորավ, չկա,
(Ով գտել է, թող բերի տա):
Կորցրեց հարցը՝ մեկի տված,
Մխախոտի տուփը սիրած,
Հովանոցն ու ձեռնափայտը,
Արեգակի ճառագայթը,
Կորցրեց գլուխն ու չափսոսաց.
«Դատարկ բան էր»,— մտքում ասաց:
Ու մի օր էլ կորցրեց կատվին,
Կորցրեց իրենց տան բանալին,
Նույնիսկ, հասցեն իր սեփական,
Բայց... չտխրեց ոչ մի անգամ...

Թարգմ.
Ս. ՄԿՐՏՉՅԱՆ




Ա՜խ, երանի անվանեին ինձ Դանթե,
Կգրեի մի պոեմ.
Ա՜խ, Էվկլիդ անվանեին ինձ կամ թե,
Կգրեի մի թեորեմ:

Իսկ Ջոտտոյի անունը թե ունենամ,
Կդառնամ լավ նկարիչ
Եվ արվեստի ասպարեզում անպայման
Կլինեմ մեծն ամենքից:

Բայց չեմ ուզում հրաժարվել ես, գիտե՞ք,
Անունից իմ սեփական,
Որով կոչել ու կանչել են ինձ անվերջ
Օջախում իմ հայրական:

Նրանով եմ ես օրեցօր ավելի
Դառնում լավն ու սիրելի:

Նկ. ԿԱՐԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆԻ





Թիթեռնիկը թռչկոտում էր արևի տակ [illegible] պայծառ թևերով, քան [illegible] երբևէ:

Նա [illegible] [illegible] հանկարծ ուղղվեց դեպի [illegible] ձախ մասում գտնվող շրջապատված ընդարձակ տարածությունը:

Եվ ահա, զարմա՞նք բան, տարիների հետապնդումից հոգնած և [illegible] ծերունին (որովհետև լեգենդն ասում է, որ նա արդեն ծերունի էր դարձել) իր մազերի սպիտակությունը մոռանալով, երիտասարդական կրակով շարունակում էր վազել թիթեռնիկի հետևից:

Վերջապես թիթեռնիկը հասավ այն ամայի վայրը, որը ծածկված էր սպիտակ քարերով, մի մասը՝ կանգուն, մի մասը՝ պառկած: Ծերունին հետևեց նրան և հազիվ էր մոտեցել, երբ զգաց, որ ոտքերը կթուլանում են. փորձեց հենվել մի քարի, բայց ուժասպառ գետին տապալվեց:

Երեք անգամ ծերունին փորձեց տեղից վեր կենալ, բայց երեք անգամն էլ նա ընկավ գետին: Տեսնելով, որ թիթեռնիկին բռնելու հույսը այլևս կորած է [illegible], իսկ ծերունին [illegible] անզոր բազուկները պարզելով գետին նա

Թիթեռնիկը, կարծես խղճահարվելով, եկավ թառելու ծերունու գլխավերևը: Ծերունին տեսավ, որ թիթեռնիկի թևերը կորցրել էին իրենց նախկին վառ գույներն ու դարձել էին [illegible] գորշկապտագույն (ծերունու [illegible] աչքերին էին երևում այդպես):

Թիթեռնիկը քիչ-քիչ նեղացնում էր թռիչքի [illegible]: Նա վերջապես նստեց ծերունու [illegible] ճակատին:

Այդ ժամանակ ծերունին վերջին ճիգով բարձրացրեց ձեռքը և կարողացավ մի կերպ շոշափել թիթեռնիկի մի թևի ծայրը:

Բայց ինչպիսի՜ հուսախաբություն պատճառեց նրան, երբ տեսավ, որ դա թիթեռնիկ չէր, այլ արևի մի շող...

Եվ նրա սառած ձեռքը թույլ ընկավ ու մնաց անշարժ:

Այստեղ էլ վերջանում է լեգենդը:



# ԻՆՉՊԵՍ Է ԾՆՎԵԼ ԵՐԳԸ

ՄԱՐԳԱՐԻՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԻ

Վաղ առավոտից մինչև ուշ գիշեր, ամենուրեք, ուր ապրում են մարդիկ, լսվում է երգը։ Երգում են բոլորը՝ աշխարհի բոլոր մայր ցամաքներում, մեծ և փոքր կղզիներում, երգում են մեքենավարը և ճարտարապետը, ձկնորսը և քարտաշը, գիտնականը և բանվորը, երիտասարդը և ծերունին, մանուկը և հասուն մարդը, երգում են՝ արտահայտելով իրենց հույզերը և մտքերը։

Երգը մեր կյանքի անբաժանելի մասն է՝ տրտմության և ուրախության, պարծանքի և հանգստի պահին։



Բայց ո՞վ է ստեղծել երգը, ինչպե՞ս է այն սկիզբ առել և զարգացել մարդու կյանքը։

Հին աշխարհի՝ Եգիպտոսի, Հնդկաստանի, Չինաստանի, Հունաստանի, Հայաստանի պատմական դեպքերի մասին մենք հաճախ տեղեկություններ ստանում երգի օգնությամբ։ Պատմական, դյուցազնական, ծիսական, աշխատանքային երգերը օգնում են հասկանալու հեռավոր անցյալը։

Երգի, հատուկ գործիքային երաժշտության առկայությունը հնագույն պետություններում, վկայում է, որ երգը առաջացել է շատ ավելի վաղ, քան առաջացել են հնագույն պետությունները, քաղաքները, այն ժամանակ, երբ դեռևս չկային ստրուկներ և ստրկատերեր, այսինքն՝ նախամարդկային հասարակության ժամանակ։

Իր գոյությունը պահպանելու համար նախամարդը հսկայական ճիգ էր գործադրում։ Նրան շրջապատող աշխարհը անողոք էր անպաշտպան մարդու դեմ, նրա ամեն մի քայլը կապված էր հսկայական դժվարությունների հետ։ Գոյության պահպանելու պայքարում միջոցը որսորդությունը և ձկնորսությունն էր։ Հաջող կամ անհաջող որսը, դժբախտ պատահարը, դաժան տարերքը, թշնամական ցեղերի անակնկալ հարձակումները՝ այս ամենը ազդում էին մարդու վրա, առաջացնում բողոքելու, աղերսելու, պայքարելու ցանկություն։ Միմիայն խոսքը, որի արտահայտական հնարավորությունները դեռևս չափազանց չնչին էին, անկարող էր արտահայտել նախամարդու ապրումները։ Համարյա անզեն մարդուն սպառնացող բազմաթիվ վայրի գազանները մշտական սարսափի աղբյուր էին։ Անչափ մեծ էր նրա ուրախությունը, երբ սպանելով վայրի կենդանիներին, նա իր ցեղակիցների հետ հաղթանակով վերադառնում էր տուն։

... Իրիկնադեմին մեծ խարույկի մոտ են հավաքվել բոլոր ցեղակիցները։ Նրանք անհամբեր սպասում են իրենց ամուսիններին, եղբայրներին, որդիներին։ Ահա հեռվից լսվում են հաղթական կանչերը, և շուտով խարույկի շուրջը հանպատրաստից սկսվում է մի հետաքրքիր «ներկայացում»։ Որսորդները պատմում են որսի ողջ ընթացքը։ Խոսքը, կանչը, ձայնը, տարբեր շարժումները հաճախ անկարող են պատկերավոր ձևով նկարագրել այն ամենը, ինչ որ ձգտում են արտահայտել որսորդները։ Օգնության է հասնում երգը, որն ավելի ազդեցիկ է դարձնում խոսքը և

շարժում։ Այդպես մի հետաքրքիր միասնություն կազմելով, իր բուռն կրքերը և ապրումներն է արտահայտում նախամարդը։ Երբեմն այդ ներկայացման առանձին մասնակիցները վայրի գազանների մորթիներ էին գցում իրենց վրա, դրանով իսկ ավելացնելով ներգործումը։

Սակայն միշտ չէ, որ որսը բոլոր մասնակիցների համար բարեհաջող էր ավարտվում։ Որսի պահին աներգները հույզերի արտահայտման տիպական ձևերից էին։

Նախամարդը անկարող էր բացատրել բնության երևույթները։ Անձրևը, ձյունը, կայծակը՝ ամպրոպը նա վերագրում էր գերբնական ուժերին և նրանց դեմ պայքարելու ձևերից մեկը համարում էր երգը։ Այդպես, անմիջական իրադարձություն-ները հիմք են ծառայում երգի ստեղծման համար. Նախամարդը երգելու բնական պահանջ էր զգում,



այն օգնում էր նրան պայքարել, պաշտպանվել շրջապատի չարիքներից։

Երգը, ինչպես և մարդը, անցել է երկար և հետաքրքիր ուղի։ Իրենց զարգացման հազարամյակների ընթացքում տարբեր ցեղեր, ժողովուրդներ, ազգություններ ստեղծել են իրենց բնույթով ինքնատիպ ժողովրդական երգեր, որոնց միջոցով արտահայտել են ազգային վառ բնավորության յուրօրինակ կողմերը։

Ժողովրդական երգն իր հերթին հիմք է ծառայել կոմպոզիտորական ստեղծագործության, երաժշտական տարբեր ժանրերի՝ օպերայի, սիմֆոնիայի, կանտատայի, կվարտետի և բազմաթիվ այլ ժանրերի ստեղծման համար։

# ՇԱՂԳԱՄԻ ԴԱՇՏԻ ՎԵՆԵՐԱՆ

Ֆրանսիական քանդակագործ Ֆրենսիս Կրեմոնեզեն կատակասեր մարդ էր։

Նա որոշեց ապացուցել իր համաքաղաքացիներին, թե ինչ է նշանակում իր տաղանդը և սքանչելի կերպով քանդակեց հռոմեական գեղեցկության աստվածուհու՝ Վեներայի արձանը։ Երկու տարի աշխատելուց հետո, քանդակագործի հատիչի տակ տձև մարմարից ստեղծվեց չքնաղ աստվածուհին։

Կրեմոնեզեն լավ էր ուսումնասիրել անտիկ արվեստը, և նրա ստեղծագործությունը նմանվում էր հնադարյան հույների արձանին։ Երբ աշխատանքը ավարտվեց, վարպետը վերցրեց մուրճը և ջլատեց իր գործը։ Աստվածուհին զրկվեց ձեռքերից և քթից։ Այնուհետև երիտասարդ ֆրանսիացին մութ գիշերով արձանը թաղեց հարևանի շաղգամի դաշտում։

1937 թվականի մայիսի 2-ին մի գյուղացի իր դաշտը հերկելիս



գութանի խոփով դիպչում է «հնադարյան» արձանին։

«Հնադարյան» վարպետի աշխատանքի կատարելությունը ապշեցնում է մասնագետներին. համաշխարհային մամուլը շտապում է հայտարարել, որ գտնված արձանը անտիկ արվեստի լավագույն նմուշ է և «Շաղգամի դաշտի Վեներան» համեմատում են աշխարհահռչակ Միլոսյան Վեներայի հետ։

Եվ ահա, 1938 թվականի դեկտեմբերի 16-ին քանդակագործը գիտնականներին ու ժուռնալիստներին մանրամասն պատմում է «հնադարյան» արձանի աշխարհ գալու պատմությունը, ցույց է տալիս մարմարի կտորները, որոնք իր մուրճի հարվածներով պոկվել էին արձանից։ Երբ այդ կտորները կպցրին արձանին, տեսան, որ նրանք ճշտորեն համընկնում են իրենց տեղերին։

Կրեմոնեզեի այս խաբեությունը անշահախնդիր է եղել։ Քանդակագործը ոչինչ չի շահել իր կեղծիքից։

*Թարգմ. Մ. ՀԱԿՈԲՅԱՆ*

# ԲԱՑԱՐՁԱԿ ՉԵՄՊԻՈՆԸ

1964 թվական։ Հոկտեմբեր։ Երևանի կոմերիտմիության Սպանդարյանի շրջկոմում բյուրոյի նիստ է։ Դուռը բացվում է և երկչոտ քայլերով ներս է մտնում ամոթխած մի աղջիկ։

Կրուպսկայայի անվան դպրոցի ԼԿԵՄ կոմիտեի քարտուղար Մանուշակ Գրիգորյանը զեկուցում է.

— Լյուդմիլա Ժիրայրի Ավագյան. 8-րդ դասարանի աշակերտուհի. ծնվել է 1950 թվականին, Երևանում։ Դիմել է կոմերիտմիության շարքերն ընդունվելու համար։ Լյուդմիլան լավ սպորտսմենուհի է. այս տարի՝ Համամիութենական պիոներական խաղերի մրցությունում, նա նվաճեց թեթև ատլետիկայի գծով բացարձակ չեմպիոնի կոչումը։

Բոլորը բարեկամաբար ժպտում են։ Չէ՞ որ նրանք արդեն լավ գիտեն Լյուդմիլային։ Ընդամենը մեկ ամիս առաջ հեռագիրը կայծակի արագությամբ հասավ Երևան. «Կրուպսկայայի անվան դպրոցի 8-րդ դասարանի աշակերտուհի Լյուդմիլա Ավագյանը պիոներական Համամիութենական 2-րդ խաղերի ժամանակ նվաճեց Սովետական Միության բացարձակ չեմպիոնի պատվավոր կոչումը»։

Սև ծովի ափին գտնվող «Արտեկ» միջազգային պիոներական ճամբարում Հայաստանի սպորտային պատվիրակությունը ցնծության մեջ էր։

Լյուդմիլան հաղթել էր միութենական բոլոր ռեսպուբլիկաների, Մոսկվայի և Լենինգրադի հավաքական թիմերում ընդգրկված 90-ից ավելի պատանի սպորտսմենուհիներին։



Աշխարհահռչակ Կուցը շնորհավորում է Համամիութենական երկրորդ պիոներական խաղերի բացարձակ չեմպիոնի կոչումը նվաճած Լյուդմիլա Ավագյանին։

«Երկնագույն» ճամբարի սպորտային մրցարանում բոլորն անհամբեր սպասում են։ Տրվում է 60 մետր վազքի ստարտը։ Կենտրոնի վազքուղում կանգնել է Լյուդմիլան։ Լսվում է կրակոցազդանշանը, և առանց վայրկյան իսկ կորցնելու, նա նետվում է առաջ։ Մեկ, երկու, երեք... անցնում են վայրկյանները, իսկ Լյուդմիլան առաջ է անցնում բոլորից։ Նա առաջինն է հասնում ֆինիշին։ Բարձրախոսը հայտնում է. «Հայաստանի ներկայացուցիչ Լյուդմիլա Ավագյանը 60 մետր վազքատարածությունում նվաճեց առաջին տեղը։ Նրա անցման ժամանակն է 8 վայրկյան»։

Հաջորդ օրը «Երկնագույն» ճամբարի սպորտային մրցարանը նորից լեփ-լեցուն էր։ Գույնզգույն մայկաներով բազմաթիվ աղջիկներ պատրաստվում էին մրցելու ցատկ երկարությունից։ Հերթով ցատկահեղին էին մոտենում պատանի ատլետները։ Նրանցից վորոնեժցի, ՌՍՖՍՌ-ի հավաքականի անդամ Տ. Միշկինը ցույց տվեց 5 մետր 13 սմ.՝ օրվա լավագույն արդյունքը։

Քիչ անց, հաղորդավարի ծանոթ ձայնը ազդարարեց. «Թռիչքի է պատրաստվում Լյուդմիլա Ավագյանը»։ Լյուդմիլայի նախորդ օրվա բացարձակ հաղթանակը սրել էր բոլոր մարզիչների և դատավորների ուշադրությունը։

Լյուդմիլան հուզված մոտենում է ստարտին, խոր շունչ է քաշում և ցատկում։ Հիանալի է և գեղեցիկ։

«Հայաստանի թիմի ներկայացուցիչ Լյուդմիլա Ավագյանի արդյունքը 5 մետր 25 սմ. է. դա Սովետական Միության նոր ռեկորդ է», — հանդիսավորությամբ հայտարարում է բարձրախոսը»։ Ընկերներն ու ընկերուհիները օղակել և ջերմորեն շնորհավորում են նրան։

Այնուհետև սպորտսմենները մրցեցին ցատկ բարձրությունից և գնդակի նետումից։ Եվ ահա... մրցումների փակման օրը նա բարձրացավ հաղթողի պատվանդանին, նվաճեց բացարձակ չեմպիոնի կոչումը, արժանանալով ոսկե մեդալի և դափնե պսակի։

Սակայն հաջողությունը հեշտությամբ ձեռք չի բերվում։

Լյուդմիլան այսօր էլ հիշում է, թե ինչպես առաջին անգամ, 11 տարեկան հասակում, մոտենալով իրենց դպրոցի թեթև ատլետիկայի խմբակի մարզիչ ընկ. Տ. Թաշչյանին, խնդրեց

իրեն ընդունել թեթև ատլետիկայի խմբակ: Հիշում է նաև, որ հայրը սկզբում չէր համաձայնվում, որ միակ աղջիկը սպորտսմենուհի դառնա: Սակայն Լյուդմիլայի թախանձանքները և մարզիչի ջանքերը իզուր չանցան:

Սկսվեցին քրտնաջան և երկարատև մարզումները, ապա՝ առաջին մրցումները:

...Մրցում էին Սպանդարյան շրջանի դպրոցների թեթև ատլետները: Չնայած իր բոլոր ջանքերին, Լյուդմիլան գրավեց վերջին տեղերից մեկը: Բայց նա չհուսահատվեց և շարունակեց պարապել:

1963 թվականին, արդեն ռեսպուբլիկայի հավաքական թիմի անդամ Լյուդմիլան մեկնում է Թբիլիսի՝ մասնակցելու երկու եղբայրական ռեսպուբլիկաների դպրոցականների հանդիպմանը: Այստեղ 100 մետր վազքի և ցատկ երկարության մրցությունում նա գրավեց 2-րդ տեղը:

1964 թվականի ամռանը Լյուդմիլա Ավագյանը թեթև ատլետիկայի քառամարտում նվաճեց ռեսպուբլիկայի բացարձակ չեմպիոնի կոչումը:

Վերջերս Անդրկովկասյան ռեսպուբլիկաների «բարեկամական խաղերում» Լյուդմիլան սահմանեց թռիչք երկարության նոր ռեկորդ, այն հասցնելով 5 մ. 43 սմ.-ի:

Լյուդմիլա Ավագյանը լավ է սկսել իր սպորտային կենսագրությունը: Եվ համառ ու սպորտային բարձր կամքի տեր աղջիկն հետագայում կհասնի ավելի մեծ հաջողությունների:

Մենք հավատում ենք դրան:

ՄԻՔԱՅԵԼ ԽՈՊԻՐՅԱՆ

Նկարները՝

ՄԻՔ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

# ՄԻ ՉԱՐ ԹՈՌՆԻԿԻ, ՄԻ ԲԱՐԻ, ԲԱՐԻ ՏԱՏԻԿ



ԶԵՄՖԻՐԱ ԱՀԱՐՈՆՅԱՆ

Նա մի փոքրիկ պառավ է, այնքան փոքրիկ, որ թվում է, թե մի բուռ է: Այդպես էլ ասում են նրան հարևանները՝ «այն փոքրիկ պառավը»: Ու չգիտեն, որ նա փոքր պառավ լինելուց բացի, նաև մի չար թոռնիկի, բարի՜, բարի տատիկ է:

Ես էլ չգիտեի այդ: Բայց մի օր իմացա...

Հաճախ էի տեսնում նրան տան մուտքից դուրս գալիս ու միշտ զարմանում էի, թե ինչպես է կարողանում իր հետևից քարշ տալ բողկով լի պարկը: Ախր նա շատ փոքրիկ էր ու թույլ, իսկ պարկը՝ մեծ ու ծանր: Պարկն ու ինքը համարյա նույն չափի էին: Նայում էի նրա հետևից ու մտածում. ինչու՞ է այդպես անօգնական այդ խեղճ տատիկը: Մի՞թե նա ոչ մի հարազատ չունի...

Իսկ մի օր այնպես պատահեց, որ մենք համարյա միասին դուրս եկանք: Նա դարձյալ իր պարկի հետ էր, պարկն էլ այնքան լիքն էր, որ ինձ թվաց, թե տատիկն այն երբեք չի կարողանա տեղից շարժել: Ու, իհարկե, չի կարողանա:

Մոտեցա, բռնեցի պարկի մի անկյունից և սկսեցի քաշել հետը դեպի դիմացի մայթը: Նա պիտի նստեր այնտեղ և մինչև երեկո վաճառեր բողկը:

— Պետք չէ, որդի, շորերդ մի՛ կեղտոտի, ես ինքս կտանեմ,— աշխատեց ընդդիմանալ տատիկը, բայց ի վերջո թույլ տվեց:

Երբ փողոցն անցանք, նա իր դողդոջուն ձեռքերով, որքան կարող էր արագ, բացեց պարկի բերանը, ընտրեց մի կապուկ բողկ և մեկնեց ինձ, խնդրելով վերցնել:

— Ո՛չ, ո՛չ, տատի՛կ, ի՞նչ ես ասում, պետք չէ,— հրաժարվեցի ես:

Նա կարծես վշտացավ, հետո ժպտաց մի տեսակ մեղավոր, ու փոքրիկ, կնճռոտված ձեռքով ցանկացավ մաքրել վերնազգեստիս ցեխոտված փեշը: Ես թույլ չտվի և հրաժեշտ տալով՝ հեռացա դեպի ավտոբուսի կանգառը:

Կանգառում կանգնած մարդիկ նայում էին, թե ինչպես եմ մաքրում ցեխոտված զգեստս: Երևի մի փոքր առաջ էլ նայում էին, թե ինչպես մի փխրուն, բարալիկ աղջիկ այդ բանուկ փողոցով քարշ է տալիս բողկով լի, թաց պարկը: Բայց ես ամենևին չեմ ճնշվում նրանց հայացքներից, նրանք երևի չտեսան, թե տատիկն ինչպիսի հայացքով նայեց ինձ բողկը մեկնելիս: Ես տեսա այդ հայացքը, աղերսանքով, վախով ու շնորհակալությամբ լի հայացքը ու չամաչեցի պարկը քարշ տալու և զգեստս ցեխոտելու համար...

Այդ օրը ես իմացա, որ տատիկը ինձ հասակակից մի թոռնիկ ունի: Ուրեմն մենակ չէ նա, կա մի թոռնիկ, որ տատիկինն է, որքա՜ն լավ է: Ես այնպե՜ս ուրախացա... Իսկ հետո... Ո՞ւր է թոռնիկը, ինչո՞ւ չի գալիս, ինչո՞ւ նրան ոչ ոք չի տեսել տատիկի մոտ: Ես էլ չեմ տեսել...

Մի՞թե չգիտե, թե որքան պետք է ինքը տատիկին: Ու թվաց, թե այդ թոռնիկը շատ չար է ու բոլորովին չի խղճում իր բարի, բարի տատիկին:

Նա մի փոքրիկ պառավ է, այնքան փոքրիկ, որ թվում է, թե մի բուռ է: Այդպես էլ ասում են հարևանները՝ «այն փոքրիկ պառավը»: Ու չգիտեն, որ փոքրիկ պառավ լինելուց բացի, նաև մի չար թոռնիկի, մի բարի, բարի տատիկ է:

Ես սովորություն չունեմ գնումներ կատարելու, բայց ամեն անգամ նրա մոտով անցնելիս մի կապուկ բողկ եմ գնում:

Նա աշխուժանում է, ժպտում, իրար անցնում ու փնտրում ամենախոշոր կապուկը, իսկ ես վերցնում եմ ամենափոքրիկը, դրամը դնում նրա ձեռքի մեջ ու հեռանում:



Նկ. ՎԱԶԻ ԹԵՎԱՆՅԱՆԻ

— Ա՜յ որդի, ախր ինչո՞ւ ես փողը տալիս... Սպասի՛ր, էլի շատ է, գոնե մանրը ետ վերցրու:

— Հետո՛, հետո՛, տատի՛կ, հետո էլի՜ բողկ կվերցնեմ,— ձայնում եմ ես հեռվից:

Իսկ նա, որ անհանգստացած վեր էր կացել, նորից նստում է տեղը, կծկվում, որ վաճառի բողկը մինչև երեկո:

Հետո տուն կգնա, կնստի պատշգամբում ու կսպասի...

Կսպասի թոռնիկին: Իսկ նա չի գա: Կսպասի տատիկը, ու երբ կհանգչեն բոլոր լույսերը, նա ներս կմտնի իր լուռ սենյակը, կպառկի, բայց քուն չի տանի:

«Այսօր էլ չեկավ», կմտածի հեզ ու խոնարհ և կարտասվի կամացուկ, բայց չի նեղանա...

Ոչինչ, վաղը կգա...

Սակավափորձ շախմատիստները հաճախ հարցնում են՝ ո՞րն է լավ. փի՞ղը, թե՞ ձին, երկու նավա՞կը, թե՞ թագուհին, ձի՞ն, փի՞ղը՝ մեկ կամ երկու զինվորով, թե՞ նավակը և այլն: Եթե վերադառնանք մեզ արդեն ծանոթ ֆիգուրների համեմատական արժեքների աղյուսակին, ապա կհամոզվենք, որ խոսքը վերաբերում է ուժերի մոտավոր հավասարակշռությանը: Իրոք, երկու նավա՞կ, թե՞ թագուհի բայց չէ՞ որ աղյուսակի համաձայն $4 + 4 = 8$: Հետևապես, երկու նավակը մոտավորապես հավասար են թագուհուն: Սակայն նման չոր թվաբանական հաշվարկը միշտ չէ, որ ճիշտ է լինում: Եթե դա այդպես լիներ, շախմատը վաղուց գոյություն չէր ունենա: Շախմատի ձգողական առանձնահատկություններից մեկն այն է, որ խաղատախտակի վրա առաջ են գալիս այնպիսի դիրքեր, որտեղ նյութական նորմալ հարաբերակցությունները կորցնում են իրենց ուժը: Ավելին, շախմատիստի ուժի ու տաղանդի ցուցանիշներից մեկը կայանում է նրանում, որ նա կարողանա կռահել և ստեղծել այնպիսի դիրքեր, որտեղ ֆիգուրների արժեքների սովորական պատկերացումները խախտված են, և վճռական նշանակություն են ստանում կոնկրետ գործոնները:




Տվյալ դեպքում խաղատախտակի վրա մոտավորապես նյութական հավասար դրություն է: Չէ՞ որ փիղը և երեք զինվորը մոտավորապես համարժեք են նավակին ու երկու զինվորին:



# Սկսնակ շախմատիստի ԴՊՐՈՑ

## Դասավանդում է աշխարհի չեմպիոն ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

Հետևապես, կարելի՞ է արդյոք գնահատել, որ կողմերի շանսերը հավասար են: Ո՛չ: Վճռականն է այստեղ սպիտակների հնարավորությունը՝ օգտագործելու իր ֆիգուրների ակտիվ դասավորությունը, արդյունավետ կերպով կատարելու բարդ փոխանակությունները: Շարունակելով՝ 1. Նb7 + Աc8 2. Աc6, սպիտակներն այնուհետև խաղում են Նd7, Ն:d6 և ոչնչացնելով սև զինվորները՝ խաղը շահում:

Այս օրինակը ակնառու կերպով ցույց է տալիս, թե ինչպես դիրքի առավելագույն ուժեղացմամբ կարելի է ստեղծել օգտավետ փոխանակությունների պայմաններ և շահել խաղը:



Այստեղ սևերը ավել որակ ունեն, սակայն քայլի հերթը սպիտակներինն է և, տեսեք, թե ինչ զարմանալի իրադարձություններ են տեղի ունենում խաղատախտակի վրա:

1. Զf7 + Աg8 2. Զh6 + (2. Զd6 + Թ:c4 3. Զ:c4 քայլերից հետո գործը կվերջանար թագուհիների փոխանակմամբ) Աh8: Ինչպե՞ս շարունակել խաղը. կարելի է իհարկե ոչ-ոքի հասնել՝ ձիով հավերժական շախ հայտարարելով f7 և h6 դաշտերի վրա...

Սակայն 3. Թg8 +! և ստացվում է մի զարմանալի դիրք՝ 3...Ն:g8 4. Զf7 × !!

Մեկ սպիտակ ձին ծիծաղում է սևերի ողջ բանակի վրա: Նման մատը կոչվում է «խեղդուկ մատ»:

Տեսեք մի քանի օրինակներ ևս, որտեղ վճռական նշանակություն ունեն դիրքի կոնկրետ առանձնահատկությունները:



Տվյալ դրությամբ երկու նավակները թագուհուց ուժեղ են, որովհետև նրանք կարող են գրոհել և վերցնել c7 զինվորը:



Սևերը երկու ավելի զինվոր ունեն: Սակայն նրանք հաղթել չեն կարող, եթե սպիտակները պաշտպանվեն ճիշտ: Պետք է ձիով մանևրել այն հաշվով, որպեսզի հնարավորություն չտրվի սևերին առաջ շարժել f4 զինվորը:



Այստեղ նույնպես ոչ-ոքի է: Զինվորները առաջ շարժելու համար սևերը վաղ թե ուշ պետք է զինվորով խաղան c3: Այն ժամանակ սպիտակները անհապաղ փիղը զոհաբերում են c3 զինվորի փոխարեն և հասնում պատային դիրքի:

Նման օրինակներ շատ և շատ կարելի է բերել: Ուսումնասիրելով վարպետների պարտիաները, լուծելով շախմատային էտյուդներ, վերլուծելով սեփական խաղերը, պետք է ուշադրություն դարձնել, գրի առնել և հիշել նման դիրքերը: Դա հնարավորություն կտա խաղի ժամանակ ճիշտ կողմնորոշվել և դուք կկարողանաք շախմատ խաղալ ավելի լավ:

Տ. Պետրոսյան



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
Նկ. ՍՈՒՐԵՆ
ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Այս համարի հետ տրվում է անվճար հավելված՝ Հոկտեմբերիկների համար:

# ՁՄԵՌԱՅԻՆ ԷՍՏԱՖԵՏԱ

## 1. ԷՍՏԱՖԵՏԱ ԴԱՀՈՒԿԱՁՈՂԵՐՈՎ

Էստաֆետային միաժամանակ կարող են մասնակցել երկու կամ երեք խումբ՝ խաղացողների հավասար քանակով: Յուրաքանչյուր խմբում նրանք բաժանվում են «առաջին» և «երկրորդ» համարների և կանգնում են միմյանց դեմ՝ երկու շարասյունով: Մրցող խմբերի մեջ պետք է լինի 40-50 մետր տարածություն:

Խաղի բոլոր մասնակիցները դահուկներով են, բայց առանց դահուկաձողերի: Փայտեր ունեն միայն առաջին համարները, որոնք սկսում են խաղը: Խաղավարի սուլոցով նրանք նետվում են առաջ: Նրանցից յուրաքանչյուրը, որքան կարող է, արագ է անցնում 50 մետր տարածությունը և փայտը հանձնում է իր խմբի երկրորդ համարին: Վերջինս, վերցնելով փայտը, սլանում է դեպի դիմացի շարասյունը:

Այնուհետև էստաֆետան շարունակում են յուրաքանչյուր խմբի երրորդ խաղացողները: Էստաֆետայում հաղթում է այն խումբը, որի վերջին դահուկորդը առաջինն է հասնում ֆինիշին, այսինքն՝ անցնում է հակառակ կողմի գիծը: Խաղի ընթացքում խմբերը պետք է տեղերը փոխեն:

Խաղը կրկնելու դեպքում կարելի է տևողությունը կրկնապատկել: Այդ ժամանակ, հրապարակի հակառակ կողմում գտնվելով, խաղացողները կատարում են երկրորդ կրկնավազքը, այնպես որ վերջում բոլորը լինեն իրենց ելման տեղերում:

## 2. ԷՍՏԱՖԵՏԱ ՍԱՀՆԱԿՆԵՐՈՎ

Այս խաղի համար նախօրոք նշագծում են 100-ից 500 մետր տրամագիծ ունեցող կլոր շրջան՝ պայմանական ստարտով և ֆինիշով: Այնուհետև շրջանը դրոշակներով բաժանում են առանձին էտապների այնպես, որ դրանց թիվը հավասար լինի խաղացողների թվին: Խաղին մասնակցող խմբերը (միաժամանակ կարող են խաղալ երկու կամ երեք խումբ) իրենց անդամներին շարում են հետևյալ կերպ. ստարտի մոտ յուրաքանչյուր խմբից կանգնում են երկուական խաղացող՝ սահնակներով, իսկ էտապներում՝ դրոշակների մոտ մեկական խաղացող:

Խաղավարի պայմանական նշանով խաղը սկսողները ստարտի մոտ գրավում են ելման դիրք. խաղացողներից մեկը նստում է սահնակին, իսկ մյուսը վերցնում է սահնակի պարանը:

«Առաջ» ազդանշանով խաղա-


Խմբագիր՝ ՍԱԳ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՁՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ԶՐԱՔՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06,
ՎՖ 07967, Պատվեր՝ 2241 Տպաքանակ՝ 17600: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 28 XII 1961 թ., ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91:
Գինը 20 կ.

ԾԱՂԻԿՆԵՐ

Նկ. Սևանի Խ. Աբովյանի անվ. միջ. դպ. Vբ դաս. աշ. ՌԱՖԻԿ ԽԱՉԱՏՐՅԱՆԻ




Սիրե՛ք, մանուկնե՛ր, ամեն ժամանակ
Խելքի ու մտքի այս նոր ձեռնարկը.
Ձեզ չի պատմելու ոչ մի ծիծեռնակ,
Ինչ որ պատմում է այս «Ծիծեռնակը»։




## ՇՈՒՆՆ ՈՒ ԿԱՏՈՒՆ

Արմենենց սև շունն ու սպիտակ կատուն ապրում էին չափազանց խաղաղ ու հաշտ։ Նրանց կարելի էր տեսնել պատշգամբում կամ բակում ժամերով խաղալիս, կամ պարզապես ննջելիս։ Հատկապես ամռան շոգ ամիսներին նրանք իրենց օրն անց էին կացնում բացօթյա, ճանճ ու բզեզ էին որսում, անգամ ուտում միևնույն ամանից։

Երբ Արմենը դեռ փոքր էր, ինքը նույնպես հաճախ խաղում էր նրանց հետ և նրան երբեք չէր զարմացնում իրենց տնային այս երկու կենդանիների բարեկամությունը։ Բայց երբ նա մեծացավ և գնաց դպրոց և, մանավանդ, երբ կարդաց Հովհաննես Թումանյանի «Շունն ու կատուն», զարմանքից բերանը մնաց բաց։



— Մայրիկ,— դիմեց նա իր մորը,— դու «Շունն ու կատուն» կարդացե՞լ ես։

— Իհարկե,— ժպտաց մայրիկը։

— «Ժամանակով կատուն ճոն էր...» սկսեց Արմենը։

— «Շունն էլ գլխին գդակ չուներ...» շարունակեց մայրիկը։

Ուրեմն՝ գիտես։ Իսկ ինչպե՞ս է, որ մեր շունն ու կատուն չեն կռվում իրար հետ,— հարցրեց Արմենը։

Մայրիկը մի քիչ մտածեց և ասաց.

— Երևի մեր շունը բարեխիղճ և պարտաճանաչ շուն է, ժամանակին կարել ու տվել է կատվի գդակը...

— Ահա թե ինչու նրանք չեն կռվում,— մտածեց Արմենն և զարմանքից բացած բերանը փակեց։

## ՀԻՄԱՐ ԿԿՈՒՆ

Ասում են, որ կկուն չի սիրում իր բույնը, որովհետև բնից անախորժ հոտ է գալիս։ Այն էլ են ասում, որ բույնը մեղավոր չէ, ինքը կկուն չի սիրում իր հոտը, իսկ հայտնի է, որ թռչունները ծա-

ղիկների և մրգերի պես համեղի բույր չունեն ...

Երբ եկավ կկուի ածելու ժամանակը, նա ձու ածեց պատահած տեղում, բայց ոչ իր բնում։ Ինչպես բոլոր թռչունները, մեր կկուն էլ ուզում էր թուխս նստել, ճուտեր ունենալ, բայց տես որ բնում ոչ մի ձու չկար։

Ու նա առանց երկար ու բարակ մտածելու՝ սկսեց գողանալ հարևան թռչունների ձվերը. երկու ձու՝ փայտփորիկից, երկու-երեք ձու՝ արտույտից, գիշերահավից, սարյակից...



Եվ հպարտ ու ապահով թուխս նստեց։ «Ինչո՞վ եմ պակաս մյուս թռչուններից,— մտածում էր նա,— շուտով ճուտեր կունենամ, կզբաղվեմ նրանց դաստիարակությամբ...»

Որքան մեծ եղավ կկուի զարմանքը, երբ որոշ ժամանակ հետո ձվերի կճեպներից դուրս եկան ոչ թե կկվի, այլ փայտփորիկի, արտույտի, գիշերահավի, սարյակի ճուտեր։ Տեսնելով օտար թռչուն, այդ ճուտերն այնպիսի ճիչ ու աղմուկ բարձրացրին, որ մյուս թռչունները թևին տվին, եկան իմանալու, թե ինչ է պատահել։

Հետո, պարզ է, թե ինչ եղավ. գողությունը բացվեց, ամեն մեկն իր ճուտին տարավ իր բույնը, իսկ կկուն մնաց մենակ ու անտառով մեկ խայտառակված։

# ԻՆՉՊԵՍ ՀԱՎԻ ՃՈՒՏԻԿԸ ԽԱԲԵՑ ԱՂՎԵՍԻՆ

(ժամանակակից ֆոլկլոր)

Հավաբուծական ագարակի լայն բակում և նրա շուրջը աղմկում են ջերմանոցներից դուրս եկած հազարավոր հավի ճուտեր։ Թխսամայրեր չկան, որովհետև հազարավոր ձվերից դուրս են եկել հազարավոր ճուտերն արհեստական ջերմությամբ։ Չի կարելի ասել, որ նրանք տխրում են առանց հավիկ-մայրիկների. նրանք ունեն իրենց խնամողները, մեծ մասամբ աղջիկներ, որոնք ժամանակին կերակրում են նրանց, ջուր տալիս, իսկ երբ գիշերն իջնում է և նրանք ննջում են մեծ և ընդարձակ թռչնանոցների թառերի վրա, գիշերային պահակը հսկում է, որ մոտ ու հեռու թափառող աղվեսները մոտ չգան թռչնանոցներին։

Սակայն փորձանքը պատահեց ոչ թե գիշերով, այլ օր-ցերեկով։ Ճուտերից մեկը, չգիտես ինչու, ուզեց իմանալ, թե թռչնանոցի մոտ բարձրացող բլուրից այն կողմ ի՞նչ կա-չկա, վազեց և բարձրացավ բլուրը։ Աջ ու ձախ մրջյուններ կտցահարելով՝ նա սկսեց իջնել բլուրից այն կողմ և հանկարծ...

Եվ հանկարծ ընկավ ուղիղ աղվեսի բերանը։

— Թո ղ ինձ, բան եմ ասում, - խնդրեց ճուտիկը։



— Ի՞նչ պիտի ասես, — քմծիծաղեց աղվեսն՝ ատամներով շոշափելով ճուտիկի նիհար կողերը։

— Ինքդ ես տեսնում, որ ուտելու բան չեմ։ Բա՛ց թող ինձ, ողորմած քեռի... ես քեզ խոսք եմ տալիս...

— Դատարկ խոսքով աղվեսի փորը չի կշտանա,— բարկացավ աղվեսը և պատրաստվեց նախաճաշի։

Ճուտիկը չհուսահատվեց.

— Ես հայր ունեմ, մի մեծ աղա-աքաղաղ ու մայր ունեմ, մի գառան չափ հավիկ-մայրիկ. թող գնամ, նրանց բերեմ, անուշ արա...

— Ո՞նց կբերես, նրանք չեն գա, — կասկածեց աղվեսը։

— Կգան, ո՜նց չեն գա,— հանգստացրեց ճուտիկը,— նրանք կուզեն ավելի շուտ իրենց ուտես, քան իրենց ճուտիկին։

— Լավ, — համաձայնվեց աղվեսը, — միայն խոսք տուր, որ եթե չեկան, կգաս կիմացնես...

— Իհարկե, կգամ կիմացնեմ,— հավատացրեց ճուտիկը, — բա ես կթողնե՞մ, որ իմ մի հատիկ քեռին առանց նախաճաշի մնա։



Աղվեսի ակռաներից ազատված ճուտիկը վազեց, բարձրացավ բլուրը և ետ նայեց։

— Քեռի՜ աղվես,— կանչեց նա հեռվից,— ախր ես մի բան մոռացա... ես ո՛չ հայր ունեմ, ո՛չ մայր... ես ջերմանոցի ճուտիկ եմ...

# ԹԻԹԵՌՆԻԿԻ ԿՏԱԿԸ

Հայտնի է, որ կա թիթեռնիկի մի տեսակ, որը շատ է սիրում ճրագի բոցը։ Նա խաղում, թրթռում է ճրագի բոցի շուրջը, մինչև այրում է թևերը և մեռնում։



Ինչո՞ւ է թիթեռնիկն այդպիսով ավելի կարճացնում իր առանց այն էլ կարճ կյանքը։ Ամենայն հավանականությամբ նա մեռնելու նպատակով չէ, որ խաղում է կրակի շուրջը, ոչ, երևի նրա համար հաճելի է ջերմությունը. նա ուզում է ավելի մոտ և ավելի շատ զգալ ջերմության հաճույքը և ահա այրվում է ու մոխրանում։

Վերջերս մի այդպիսի թիթեռնիկ աշխարհ եկավ և տեսավ անթիվ և անհամար կրակներ և ճրագներ քաղաքի փողոցներում և տներում։ Դրանք, իհարկե, էլեկտրական լամպեր էին։ Թռավ, թըրթըռաց մեր թիթեռնիկը լույսերի շուրջը և չկարողացավ կարգին տաքանալ։

Թիթեռնիկը մահացավ ցրտից և տըխրությունից։

Մեռնելուց առաջ մի կտակ թողեց. «Ավելի լավ է այրվել կրակով, քան մահանալ ցրտից և տխրությունից»։

Մարդիկ կարդացին թիթեռնիկի կտակը և թարգմանեցին այսպես.— «Ավելի





լավ է այրվել աշխատանքով, քան ապրել ծույլ ու անօգուտ...»

## ԴԵՂՁԱՆԻԿԻ ՄԱՀԸ

Մի առավոտ էլ վեր կացան և շատ զարմացան մարդիկ, որ Դեղձանիկը չի երգում վանդակում։

Ավելի մեծ եղավ նրանց զարմանքը, երբ տեսան, որ Դեղձանիկը պառկել է վանդակում անշունչ ու անկենդան։

Ինչո՞վ եք կերակրել երեկոյան,— հարցրեց ընտանիքի հայրը,— երևի սովամահ է եղել։

Ոչ, սովամահ չի եղել, վանդակում կարելի էր տեսնել հանգուցյալի ընթրիքը՝ շաքար, ծվի դեղնուց, կորեկ, խնձորի բարակ շերտեր...

Ջուր տվե՞լ եք,— շարունակեց հարցաքննել ընտանիքի հայրը։

Փոքրիկ ամանը լեցուն էր ջրով, ոչ, Դեղձանիկը ջրի կարոտություն չի քաշել։

Ջրամանը երևի ժանգոտ է եղել, թունավորվել է,— միջամտեց ընտանիքի մայրը։

Համիկն ու Լևիկը իջեցրին ջրամանը։ Ոչ, ջրամանը մաքուր է...

Թաղեցին փոքրիկ երգչին պարտեզի մի անկյունում, սալորենու տակ և շարունակեցին մտածել, ինչո՞ւ մեռավ Դեղձանիկը։

Եվ ոչ ոքի մտքով չանցավ, որ Դեղձանիկին մահու չափ ձանձրացրել էր փակ վանդակի կյանքը և որ նա մահացավ ազատության կարոտից։

Այո, ազատության կարոտից։



Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ




ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Էս ինչ տեսակ
Տիկնիկ է,
Կարծես պոչատ
Ձկնիկ է:
Ասես՝ պառկի՛ր,
Չի պառկի,
Պառկեցնես՝
Կցատկի:
Գլուխ տալով՝
Պար կգա
Ու դեռ հետն էլ
Կպնգա.
— Տո՛նգ-տինգ,
Տո՛նգ-տինգ... —
Իբրև՝ եկե՛ք
Ինձ մոտիկ,
Տեսեք, թե ինչ
Լավիկ եմ,
Չարաճճի
Բալիկ եմ...







Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ




Լ.Վ. ԲԱԼԱԴՅԱՆ

Նկ. ՄԱՆՈՒԿ ԴՐԴՅԱՆԻ

Երեխաների ուրախությանը չափ ու սահման չկար՝ քեռին քաղաք էր եկել և իրենց համար գյուղից նվեր էր բերել մի սպիտակ այծիկ, որը ամբողջ օրը թռչկոտելով շրջում էր սենյակից սենյակ։

Մի օր էլ, երբ երեխաները տանը չէին, դպրոց էին գնացել, այծիկը մենակությունից շատ տխրեց։ Դրսի դուռը բաց էր, նա աստիճաններով ցատկոտեց ներքև ու մտավ բակ։ Դրսում ձմեռ էր, ցուրտ. նոր եկած, փափուկ, փխրուն ձյունը կայծկլտում էր արևի ճառագայթների տակ։ Այծիկը շատ ուրախացավ. նա սկսեց վազվզել, թռչկոտել, բայց հանկարծ նկատեց, որ բակի ճիշտ մեջտեղում, ձյուների միջից դուրս է ցցվել մի հսկայական կաղամբ։ Այծիկը երբեք այդպիսի մեծ կաղամբ չէր տեսել։ Նա սկզբում շփոթվեց, հետո արագ մոտ վազեց համեղ կաղամբին ու ցանկացավ ուտել։

— Է՜յ դու, հիմար այծիկ, ի՞նչ ես ուզում ինձանից, — սուր ձայնով հանկարծ բղավեց կաղամբը։

Այծիկի փոքրիկ, կարճ պոչիկը վախից վեր ցցվեց, աչքերը չռվեցին, և նա սարսափահար հեռու փախավ։ Ու հեռվից, երբ ետ նայեց, այս անգամ պարզ տեսավ, որ զարմանալի կաղամբը աչքեր ունի, նույնիսկ՝ մի փոքրիկ վեր տնկված քթիկ, ձեռքեր ու ոտքեր։

Խեղճ այծիկի սիրտը սկսեց ուժգին բաբախել. այս քաղաքում ինչե՜ր ասես, որ չեն պատահում։ «Մե՜... մե՜...» — բարակ ձայնով մայրիկին օգնության կանչեց նա։

Իսկ կաղամբը սկսեց մոտենալ իրեն։ Այծիկը վախից քարացավ տեղում։

— Է՜յ դու, հիմար այծիկ, — կրկին խոսեց զարմանալի կաղամբը, — դու ինչո՞ւ ես ինձնից վախենում. չե՞ս տեսնում, որ ես Կարինեն եմ։



## ԻՄ ԲԱՐԴԻՆ

Ճամփի եզրին գտա ճիպոտ
Ու տնկեցի առվակի մոտ.
Նա ծառ դարձավ կանաչ բարդու,
Հով է տալիս ամեն մարդու:
Կանաչի մեջ խլվլում են
Ծիտիկները մթնշաղին.
Ճյուղին թառած ծլվլում են
Գործի կանչում ամբողջ թաղին:
Ամբողջ օրը գովք են ասում
Ծառը սնող մեր մայր հողին,
Բարի մարդկանց շարքին դասում
Նաև փոքրիկ ծառ տնկողին:

ԶԱՎԵՆ ՀԱԿՈԲՅԱՆ

(Արտաշատի շրջան, Նորաշեն գյուղ)

## ԻՄ ՈՒԼԻԿԸ

Իմ ուլիկը ,գոմում փակված
Մկկում է՝ աչքերը թաց,
Մկկում է, կանչում, կանչում,
Ու կանաչ խոտ է պահանջում:

Ա՜յ իմ սևիկ, ա՜յ իմ սիրուն,
Շուտով, շուտով կգա գարուն,
Եվ կգնաս հանդ ու արոտ,
Էլ չես քաշի խոտի կարոտ:

ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ

Այծիկը ուշադիր նայեց. ճիշտ որ դա մի փոքրիկ աղջիկ էր, բայց այնպե՜ս ծիծաղելի, այնպե՜ս ծիծաղելի, այծիկը այդպիսի աղջիկ առաջին անգամն էր տեսնում: Նա այնքան շատ շորեր էր հագել, այնքա՜ն շատ, որ



իսկականից կաղամբ էր դառել: «Մե՜... մե՜...»— ուրախ ծիծաղում էր այծիկը և հետաքրքրությամբ նորից ու նորից նայում փոքրիկ Կարինեին, որը հազիվ էր կարողանում տեղից շարժվել: Ճիշտ որ ինքը մի հիմար փոքրիկ այծիկ է. չի էլ կարողանում կաղամբը տարբերել աղջկանից: Բայց դե ինքը ի՞նչ անի, որ գյուղում ոչ մի երեխա այդպես չի հագնվում. փոքրիկ տղաները շատ անգամ վերարկուն էլ են մոռանում հագնել: Տեսնելով առաջին ձյունը՝ նրանք միայն թեթև հագուստով դուրս են թռչում, թավալվում ձյուների մեջ և այնպես արա՜գ են վազում, այնպես արա՜գ, թե տղա ես՝ բռնիր:

Այծիկը կարոտած հիշեց իրենց գյուղը, տխուր աչքերով նայեց հազիվ շարժվող Կարինեին, զայրացած շրջեց գլուխը ու արագ փախավ՝ թողնելով իր հետևից արծաթափայլ ձյունե փոշին միայն:




Վ. ՍՈՒՏԵԵՎ

Շնիկը քնել էր բազմոցի մոտ, գորգի վրա։ Հանկարծ քնի մեջ նա լսեց, թե ինչպես ինչ-որ մեկը ասաց.

— Մյաո՜ւ...

Շնիկը բարձրացրեց գլուխը, նայեց. ոչ մեկը չկար։ «Երևի, երազ էր»,— մտածեց նա և ավելի հարմար պառկեց։ Բայց էլի ինչ-որ մեկն ասաց.

— Մյաո՜ւ...

— Ո՞վ կա այդտեղ։



Շնիկը դուրս թռավ, վազեց ամբողջ սենյակով, նայեց մահճակալի տա՛կ, սեղանի՛ տակ, ոչ ոք չկար. բարձրացավ լուսամուտի գոգին, տեսավ բակում աքլորն է ման գալիս։

«Ահա թե ով չէր թողնում, որ քնեմ»,— մտածեց շնիկը և վազեց բակ՝ աքլորի մոտ։

— Դո՞ւ ասացիր «մյաու»,— հարցրեց շնիկը աքլորին։

— Ո՛չ, ես ասում եմ... — աքլորը թևերը թափահարեց և «ծուղրուղու» կանչեց։

— Իսկ դու ուրիշ բան չե՞ս կարող ասել,— հարցրեց շնիկը։

— Ո՛չ, միայն՝ «ծուղրուղու»,— ասաց աքլորը։

Շնիկը թաթով քորեց ականջի հետևը և գնաց տուն...

Հանկարծ տան մուտքի մոտ ինչ-որ մեկն ասաց.

— Մյաու՜...

«Այստեղ է»,— ինքնիրեն ասաց շնիկը և տան մուտքի սանդուղքի տակը սկսեց չորս թաթով արագ փորել։

Երբ նա մի մեծ փոս փորեց, այնտեղից փոքրիկ, մոխրագույն մի մկնիկ դուրս եկավ։

— Դո՞ւ ասացիր «մյաու»,— խստությամբ հարցրեց նրան շնիկը։

— Ծի՛-ծի՛-ծի՛,— ծվծվաց մկնիկը։ Իսկ ո՞վ այդպես ասաց։



— Ինչ-որ մեկը ասաց «մյաու»։

— Մոտի՞կ տեղից,— ալեկոծվեց մըկնիկը։



— Ահա այստեղ, միանգամայն մոտիկ, — ասաց շնիկը։

— Ինձ համար սարսափելի է։ Ծի՛-ծի՛-ծի՛,— ծվծվաց մկնիկը և թաքնվեց սանդուղքի տակ։

Շնիկը մտածմունքի մեջ ընկավ։

Հանկարծ շան բնի մոտ ինչ-որ մեկը բարձրաձայն ասաց.

— Մյաու՛...



Շնիկը երեք անգամ պտույտ գործեց բնի շուրջը և ոչ ոքի չգտավ։ Բնում ինչ-որ մեկը շարժվում էր...

— Ահա նա, — ինքնիրեն ասաց շնիկը։— Հիմա ես նրան կբռնեմ...

Նա գաղտագողի եկավ ավելի մոտիկ...

Նրան ընդառաջ բնից դուրս եկավ հսկա բրդոտ շունը։

— Ռ-ռ-ռ-ռ՛, — մռռաց շունը։

— Ես... ես ուզում էի իմանալ...

— Ռ-ռ-ռ՛...

— Այդ դո՞ւք ասացիք «մյաու», — շշնջաց շնիկը, պոչը կոխելով ոտքերի արանքը։

— Ե՞ս։ Դու ինձ ծե՞ռք ես առնում, շնիկ։

Ինչքան ոտներում ուժ կար, շնիկը նետվեց այգին և այնտեղ թաքնվեց թփի տակ։

Բայց այստեղ էլ, ուղիղ իր ականջի տակ ինչ-որ մեկը ասաց.

— Մյաո՛ւ...

Շնիկը նայեց թփի տակից։ Ուղիղ նրա դիմաց, ծաղկի վրա նստել էր մեղուն։

«Ահա՛ ով էր ասում «մյաու», — մտածեց շնիկը և ուզեց նրան ատամներով բռնել։

— Զ-զ-զ-զ՛, — տզզաց չղայնացած մեղուն և խայթեց շնիկի քիթը։

Շնիկը վնգստաց ու փախավ, իսկ մեղուն ընկավ նրա հետևից։

Թռչում էր և տզզում.

— Կխայթե՛մ, կխայթե՛մ։

Շնիկը վազեց դեպի ջրավազանը և ընկավ ջուրը։

Երբ նա ջրից դուրս եկավ, մեղուն արդեն չկար։

Եվ այստեղ նորից ինչ-որ մեկը ասաց.

— Մյաո՛ւ...

— Այդ դո՞ւ ասացիր «մյաու», — շնիկը հարցրեց ձկանը, որը լողալով անցնում էր իր մոտով։

Ձուկը ոչինչ չպատասխանեց, պոչը թափ տվեց և անհայտացավ ջրավազանի խորքում։

— Կվա՛-կվա՛-կվա՛, — ծիծաղեց շուշանի տերևի վրա նստած գորտը։ Մի՞թե դու չգիտես, որ ձկները չեն խոսում։



— Գուցե դո՛ւ ես ասել «մյաու».— հարցրեց շնիկը գորտին:

— Կվա՛-կվա՛-կվա՛,— ծիծաղեց գորտը:— Դու ինչ հիմա՛րն ես, գորտերը միայն կռկռացնում են:

Եվ ցատկեց ջրի մեջ:

Շնիկը գնաց տուն ուռած քթով և թրջված, տխուր պառկեց բազմոցի մոտ ընկած գորգի վրա և հանկարծ լսեց.

— Մյաո՛ւ...

Նա վեր կացավ և տեսավ, որ լուսամուտի գոգին նստել է բրդոտ, շերտավոր կատուն:

— Մյաո՛ւ,— ասաց կատուն:

— Հա՛ֆ-հա՛ֆ-հա՛ֆ,— հաչեց շնիկը, հետո հիշեց, թե ինչպես մռռացրեց շունը, և ինքն էլ մռռացրեց.

— Ռ-ռ-ռ-ռ՛...

Կատուն մեջքը ուռեցրեց, ֆշշաց. «շ-շ-շ՛», ֆրթաց. «ֆը՛-ֆը՛» և դուրս թռավ լուսամուտից:

Շնիկը վերադարձավ դեպի իր գորգը և պառկեց քնելու: Նա այժմ գիտեր, թե ով ասաց «մյաու»:

*Թարգմ. Ա. ՃԱՂԱՐՅԱՆ*

*Նկ. ԷԴՎԱՐԴ ՉԱՔԱՐՅԱՆ*





## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ԽԵԼՈՔ ՊԵՊԵԻ ՄԱՍԻՆ

*Ժամանակով մի աղքատ լվացարարուհի էր ապրում: Նա մինուճար մի որդի ուներ՝ անունը Պեպե, որին բոլորը հիմարի տեղ էին դրել:*

*Տոնական օր էր. բոլոր տներում մակարոն ու երշիկ էին եփում ու տապակում: Միայն աղքատ լվացարարուհին էր, որ, բացի չոր հացից, ուրիշ ոչինչ չուներ ուտելու: Եվ ահա Պեպեին դիմում է մայրը.*

*Մայրի՛կ, բոլորն այսօր լավ բաներ են ուտում, իսկ մենք պետք է ցամաք հա՞ց ուտենք: Հավը տար տանեմ՝ ծախեմ ու փոխարենը մակարոն ու երշիկ բերեմ:*

*— Գժվե՞լ ես, ի՜նչ է: Ուզում ես վերջին հավից էլ զրկվե՞մ,— բացականչում է կինը:*

*Սակայն Պեպեն այնքան է խնդրում, որ վերջապես մայրը համաձայնում է:*

*Պեպեն գնում է շուկա: Նրան մոտենում է մի մարդ և հարցնում.*

— Ի՞նչ արժե հավը:

— Երեք տալեր:

— Տեսնեմ՝ չա՞ղ է, — ասացելու համար մարդը ձեռքն է վերցնում հավը:

Եվ մինչ Պեպեն ուշքի կգար, ո՛չ մարդը կար, ո՛չ էլ հավը: Պատկերացրեք, թե խեղճ Պեպեն ինչպես էր լալիս. «Վա՜յ, մայրիկս ինձ կծեծի, ի՞նչ պետք է անեմ ես»:

Հանկարծ նա տեսնում է գողին մի մակարոնի խանութի առջև կանգնած: Պեպեն կամաց մոտենում է և լսում, թե ինչպես մարդը ասում է. «Ինձ համար մի կողմ դրեք հիսուն փունտ մակարոն, ահա ձեզ փողը: Վաղը առավոտյան սպիտակ էշով մի տղա կգա, մակարոնը նրան կտաք»:

Պարզվում է, որ այդ մարդը ավազակների պետն է և իր ձեռքի տակ ունի տասնմեկ ավազակ: Երբ ավազակը վերջացրեց իր պատվերը, գնաց երշիկի խանութ, իսկ Պեպեն հետևեց նրան:

— Ինձ համար մի կողմ դրեք քառասուն փունտ երշիկ, — ասաց ավազակների ղեկավարը: — Ահա ձեզ փողը: Վաղը առավոտյան սպիտակ էշով մի տղա կգա, երշիկը կտաք նրան»:

Հետո ավազակը գնում է պանրի խանութ, ասում է, որ մի կողմ դնեն չորս գլուխ պանիր և էլի նույն բանն է ասում: Պեպեն հետևում է նրան և ամեն ինչ պահում իր մտքում:

Երբ Պեպեն տուն է գալիս, մայրը անմիջապես հարցնում է.

— Քանի՞սի վաճառեցիր:

— Ախ, մայրիկ, գիտե՞ս, թե ինչ պատահեց ինձ, — պատմում է Պեպեն:

Հենց որ մայրը լսում է, թե ինչպես են հավը գողացել, շատ է զայրանում: Սակայն Պեպեն ասում է.

— Ոչինչ, ավազակը հավի դիմաց հարյուր անգամ ավելի կվճարի: Միայն թե դու ինձ համար մի սպիտակ էշ ճարիր:

— Ի՞նչ ես անելու սպիտակ էշը, — հարցնում է մայրը, — դու մի հավ չկարողացար ծախել:

Բայց Պեպեն այնքան է խնդրում, որ մայրը գնում է հարևանի մոտ և բերում նրա սպիտակ էշը:

Առավոտ շուտ Պեպեն վեր է կենում և էշը քշում դեպի մակարոնի խանութ:

— Դե, բարեկամ, վարպետս ինձ ուղարկել է իր երեկվա գնած մակարոնը վերցնելու:

Նկ. ՄՀԵՐ ԱԲԵՂՅԱՆԻ



Հացթուխը տեսնում է սպիտակ էշը և մտածում. նա, իհարկե, այն տղան է, որը պետք է վերցնի մակարոնը: Եվ ապրանքը տալիս է Պեպենին:

Պեպեն այն բարձում է էշին ու քշում մսագործի մոտ:

— Տվեք ինձ վարպետի երեկվա գնած քառասուն փունտ երշիկը, — ասում է նա:

Եվ քանի որ մսագործը տեսնում է՝ սպիտակ է շը, երշիկը տալիս է նրան։

Այս Պետյեն գնում է պանրի խանութը և վերցնում պանիրը։ Հետո նա այդ ամենը բերում է մորը ու բացականչում.

— Մայրի՛կ, ըն արի տանենք ու բե՛փ ուտենք, քանի որ Տավը շատ թանկ են վաճառել։

Այդ ժամանակ ավագանիների ընկալայի որդին սպիտակ է շով գալիս է մսավաճառի խանութը և ուզում է սարդանը վերցնել։

— Ուզում՝ ես երկու անգա՞մ տանել, — ասում է հացթուխը, — ի՞նչ որ դու բիչ տաս՞ տարար։

— Դա ես չեմ եղել. — ասում է տղան։

— Այդ ընդունում ես քեզ չեմ կարող օգնել. — պատասխանում է հացթուխը. — մենք եկավ սպիտակ շով. մսավաճառը տվեցի նրան։

Մինչդեռ բանն են ասում նաև մսագործն ու պանրավաճառը. և ակադեմիկոսի տղան տրտմած է լինում՝ պատարկ ձեռքով տուն վերադառնալ։ Իսկ Պետյեն ու մայրը կուշտ կերան մսակարկանդակն ու երշիկը։

Ֆրանսերենից թարգմանեց
ՀՈՎՀ. ՔՅՈՒՓԵԼՅԱՆԸ



## ՏԱՏԻԿԻՍ ԴԻՄԱՆԿԱՐԸ

ՄԱՐԻԱ ՄԻՐԶԱԲԵԿՈՎԱ

Տատիկս արդեն ութսունին մոտ է,
Վարսը ձյունոտ է ու եղյամոտ է.
Ես մաքուր-մաքուր կտավի վրա
Դիմանկարն եմ նկարել նրա։
Սև ներկ եմ քսել մազերին ձյունոտ
Եվ կնճիռներն եմ ջնջել վրձինով։
Նկարել եմ ես ու տակը գրել.
— Այս իմ տատիկն է. ես եմ նկարել։







ԿԼԱՐԱ ՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. ԿԱՐԼԵՆ ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ

Մի օ՛ր բադիկը հարևան գյուղից
Եկավ ու ասաց. «Նկարիր դու ինձ.
Որպես վարձ կտամ կաղամբ՝ փութ ու կես.
Դիմանկարն՝ ինձ, իսկ կաղամբը՝ քեզ»։

Շլդոն հիացավ. կաղամբ փութ ու կե՜ս...
Ասաց. «Սիրելի՛ս. համաձայն եմ ես»։
Բադիկը նստեց. Շլդոն նկարեց.

Շատ հիանալի նկար ստացվեց։

Ինքը բադիկը անչափ հավանեց.
Հենց հաջորդ օրը կաղամբը բերեց.
Կաղամբը հանձնեց. Նկարն ստացավ.

Դրեց թևի տակ, ուրախ հեռացավ։

գամ էլ «ծափ նման» թռավ: Նա մանրիկ քայլերով վազեց պատշգամբով և խուլ մի տեղ նստավ: Քիչ անց, ուրախ-ուրախ ներս մտավ, բայց դեռ դուռը չհասած՝ կանգնեց:

— Իմացա՞ր, Կարինե:

Կարինեն լուռ կանգնած՝ կկոցել էր աչքերը, փորձում էր հիշել:

— Երևի մոռացե՞լ ես,— ասաց մայրիկը,— դե շուտ, նորից գնա և իմացիր:

Իսկ դրսում՝ Կարինեին սպասում էին Լիանան, Գագիկը և մյուսները:

Կարինեն ծուլորեն մոտեցավ մայրիկին. նա ուզում էր խնդրել, որ նորից չգնա և փորձեց հեշտ ձևով օգնել մայրիկին՝ իմանալու հեռախոսի համարը:

— Մոռացել եմ...

— Դրա համար էլ ասում եմ՝ գնա և նորից իմացիր:

Կարինեն փաթվեց մայրիկին.

— Դե լավ, մայրիկ, չգնամ, էլի՛, ինքդ աչքերիցս իմացիր...



* * *

Շաբաթ օրը Կարինեի մոտ եկավ Գագիկը: Նրանք առանձնացան: Տնեցիները, ինչպես ասում են, «աչքի պոչով» հետևում էին նրանց: Հանկարծ Կարինեն գրպանից հանեց կիրակի օրվա տիկնիկային թատրոնի իր տոմսն ու մեջտեղից ուղիղ կես արեց:

— Վերցրու,— շշնջաց նա,— դու էլ կգաս...

* * *

Կարինեի մոռացությունը մի օր, ինչ-որ բերեց ձեռքին, ներս մտավ ու սեղմեց բռունցքը.



Կարմիր շոր հագավ, նորից նկարվեց.
Նկարը տեսավ ու խիստ կատաղեց.
— Կարմիր շորըս էլ այնքան չի սազում.
Սև հագուստով եմ նկարվել ուզում։



Տեսնո՞ւմ ես, Հլգիկ, սևը սազում է.
Բայց լսիր դու ինձ, սիրտս ուզում է,
Որ ինձ նկարես ցեխի մեջ պառկած.
Աղբի արկղն էլ քնքշորեն գրկած:



Էլ չհամբերեց նապաստակը մեր.
Ամբողջ կոկորդով, որքան ձայն ուներ,
Գոռաց. «Դո՛ւրս կորիր, անճաշակ կեղտոտ.
Ոտքդ չտեսնեմ այլևս ինձ մոտ»:



— Վերցրո՛ւ, մեկ անգամ եմ ծածկել, լվա, կփոքրանա, — ասաց Կարինեին:

Կարինեն, որ ներկա էր այդ խոսակցությանը, շատ ուրախացավ:

Մի քանի օր անց, մորաքույրը նորից եկավ՝ այս անգամ մեկ ուրիշ բերետով: Այդ չվրիպեց Կարինեի աչքից: Նա մոտեցավ մորաքրոջն ու ասաց.

— Մորաքույր, բերետդ տուր՝ թող մայրիկը լվանա...





Կարինեն ունի ալբոմ, որտեղ միայն իր լուսանկարներն են: Հաճախ է նա ընկերուհիներին ցույց տալիս դրանք: Ու ամեն անգամ, երբ նոր լուսանկարներ են հայտնվում այնտեղ, նա չի մոռանում դրանք էլ ցույց տալ իր հասակակիցներին:

Բայց այնպես պատահեց, որ նրա ալբոմում հայտնվեց նաև մի լուսանկար, որտեղ ինքը բոլորովին չկար:

— Ա՜յ, Այդ լիճը, սա մայրիկն է, սա էլ՝ հայրիկը, սա էլ եղբայրս՝ Արմենը, — ցույց էր տալիս նա: — Գնացել էինք լողանալու: Այնքան լավ էր...

— Սպասի՛ր, սպասի՛ր, բայց դու չկաս լուսանկարում, — հանկարծ հարցրեց հարևանի աղջիկը:

Անսպասելի հարցից Կարինեն մի պահ շփոթվեց ու իսկույն էլ գտավ ելքը.

— Դե... ես... ե՛ս նկարվելու պահին սուզվել էի ջրի տակ...



Պատահեց այնպես, որ Կարինեին մայրը տանը մենակ թողեց:

Մոր գնալուց քիչ հետո, նա վերցրեց թուղթ ու մատիտ և ինչ-որ բան գրեց: Հետո գրությունը թողեց սեղանի վրա, դուրս եկավ, փակեց դուռը, բանալին դրեց գրպանն ու վազեց բակ:

Երբ Կարինեն բակից տուն եկավ, տեսավ մայրիկին դռան մոտ սպասելիս:

— Ինչո՞ւ ես առանց ասելու դուրս եկել տանից, — բարկացավ մայրը:

— Ես առանց ասելու դուրս չեմ եկել, չե՞ս կարդացել իմ գրածը, — արդարանալով պատասխանեց Կարինեն:

— Իսկ ո՞ւր է բանալին, — շարունակեց մայրը:

Երբ ներս մտան, սեղանին դրված թղթի վրա գրված էր. «Մայրիկ, բանալին ինձ մոտ է, ես գնում եմ խաղալու...»



Տրվում է անվճար՝ «Պիոներ»-ի 1-ին համար ի հետ:

# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ



Առյուծ

ԳՐԻԳՈՐՅԱՆ ԿՈՏԻԿ

Երևան, 9 տարեկան

Բնանկար

ՍԱՐԳՍՅԱՆ ԲԱԲԿԵՆ

Սպիտակի շրջան, Ջրաշենի միջ. դպրոց



ցողները արագ ճանապարհ են ընկնում: Առաջին էտապի վերջում գրոշակի մոտ սահնակ քաշողը կանգնում է: Նա, ով նստած էր սահնակին, արագ իջնում է և վերցնում պարանը, իսկ գրոշակի մոտ սպասողը նստում է սահնակին, և շարունակում է ճանապարհը: Այս հերթափոխությունը կատարում են բոլոր էտապներում, և այսպես, սահնակները արագությունը չթուլացնելով, անցնում են ամբողջ շրջանը:

Էստաֆետայում յուրաքանչյուր խմբի հաջողությունը կախված է բոլոր մասնակիցների ջանքերից:

Հաղթում է այն խումբը, որն առաջինն է հասնում ֆինիշին:

Խաղը կարելի է անցկացնել այգում, մեծ բակերում կամ ընդարձակ դաշտում:

## Պատասխանում ենք

**«ՊԻՈՆԵՐ» №11**

«ԲԱՌԱՇՂԹԱ-ԽԱՉԲԱՌ» — Բառաշղթա. 1. Վլասով: 2. Վագր: 3. Քիմիկ: 4. Կայրաթ: 5. Թիթառ: 6. Խուսափնով: 7. Վորոնին: 8. Նովիկով: 9. Վոլեյբոլ: 10. Լոկոմոտիվ: 11. Վոլնով:

Խաչբառ. ուղղահայաց — 2. Ագարյան: 3. Սպարտակ: 4. Մեդալ: 5. Թենիս: 8. Նիզակ: 9. Տիտով: 14. Փիղ: 15. Հոկեյ: 16. Անթառ: 17. Շախմատ: 18. Տալ: 19. Դահուկ:

Հորիզոնական. 1. Արբա: 3. Սարո: 6. Նավ: 7. Շախ: 10. Կերես: 11. Ֆինիշ: 12. Շահինյան: 13. Տարմանով: 20. Չիգորին: 21. Արշավ: 22. Եփ: 23. Կուզ: 24. Թամար:

«ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ» — Կոճ: Աերագ:

«ԹՎԵՐԻ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ»






## ՆԿԱՐ-ՀԱՆԵԼՈՒԿ

560 տարի առաջ, հին հայկական Սուխարա նշանավոր վանքում, որն ընկած է Վանա լճի հյուսիսում, ձեռագիր էր նկարազարդում պատանի Ներսեսը: Նա նկարել էր սովորել իր մեծ եղբորից՝ Հովհաննեսից, որը վանքում վարպետ նկարիչ էր:

Ներսեսին հանձնեցին մի ստվարածավալ ձեռագիր՝ ծաղկելու: Պատանին սիրում էր նկարել. կուզենար գրքի բոլոր էջերը զարդարել պես-պես զարդերով, բայց ներկերը քիչ էին. գույները պակաս՝ կարմիր, կապույտ, կանաչ ու սև: Սկզբից նկարեց խորաններ, որոնց համար շատ էր ներկ հարկավոր, իսկ երբ վերջացրեց ու դեռ էլի ներկ ունեի, սկսեց զարդարել ձեռագրի լուսանցքները նույնպես: Լավ էր նկարում Ներսեսը. ճկուն ու գեղեցիկ շարժումներով թռչուններ, կենդանիներ, ծաղիկներ ու տերևներ: Հետո մտածեց. այս բոլոր զարդերը նկարում են և մյուս նկարիչները, իսկ ինչու՞ չնկարել իր իմացած նկար-հանելուկը...

Ներսեսը գիտեր, որ իր նկարած ձեռագիրը երկար է ապրելու: Չէ՞ որ վանքում ձեռագրերն ընդօրինակվում էին մեկը մյուսից և շատ հներից: Գիտեր, որ այդ ձեռագիրը կարդալու են իր ժամանակի և իրենից հետո եկող, գիր սովորող շատ պատանիներ: Ու ցանկացավ իր իմացած նկար-



Երեք աղվես և երեք ա-
կանջ. ամեն մեկի եր-
կու ականջ:

հանելուկը սովորեն ուրիշներն էլ: Եվ ահա, ձեռագիր էջերից մեկի լուսանցքում նկարեց այն ու կողքին գրեց.

*Երեք աղվես եվ երեք ականջ,*
*Եվ ամեն մեկի երկու ականջ:*

Բայց ինչո՞ւ է նապաստակ նկարել. գուցե Ներսեսը չէ՞ր տեսել աղվես, իսկ պապից լսած նկար-հանելուկը աղվեսին էր վերաբերում:

Երբ նկարազարդված ձեռագիրը հանձնեց, գրիչը ձեռագրում գրած հիշատակարանում ավելացրեց. «և բարեմիտ պատանի՝ Ներսես ծաղկողին հիշե՛ք»:

ԱՍՏՂԻԿ ԳԵՎՈՐԳՅԱՆ

